

# ՄԵՐ ԴՐՈՇԸ

*ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*

Մեր դրոշը պիոներական
Մեծ փառքով է զարդարված,
Նա անցել է հերոսական
Ճամփաներով փառապանծ:

Երբ ելնում ենք սարերն ի վեր
Ու հասնում թուխ ամպերին,
Ամրացնում ենք դրոշը մեր
Սարի բարձր կատարին:

Դրոշն առած՝ առաջ քայլենք՝
Թող միշտ ծփա ու շողա,
Այնպես բա՜րձր, բա՜րձր պահենք,
Որ Կրեմլից երևա...




Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 8

ՕԳՈՍՏՈՍ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ՝ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

*ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ*

*Ավտոբուսները և տրոլեյբուսները, տաքսիները և մետրոյի ստորերկրյա գնացքները, բոլորն այսօր հազարավոր մարդիկ են տեղափոխում միևնույն ուղղությամբ: Մարդկանց այդ ամբողջ հոսանքը շտապում է 1954 թվականի օգոստոսի մեկին բացված Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդես:*

*Ահա գնում է Մոսկվայի պիոներների ու դպրոցականների մի խումբ: Նրանք աշխույժ զրուցում են: Տանը նրանց հայրերը և մայրերը պատմել են, որ Հայրենական Մեծ պատերազմից առաջ էլ Մոսկվայում այդպիսի ցուցահանդես կար:*

*Մինչև տրոլեյբուսի ցուցահանդես հասնելը, ջոկատավարը երեխաներին պատմում է ցուցահանդեսի մասին: Նրան լսում են ոչ միայն պիոներները, այլև տրոլեյբուսի բոլոր ուղևորները:*

*— Ցուցահանդեսին մասնակցելու պատվավոր իրավունք այս տարի ստացել են 3911 կոլտնտեսություն, 1306 սովխոզ, 419 մեքենատրակտորային կայան, անասնաբուծական ֆերմաներ, տասնյակ գիտահետազոտական հաստատություններ, մեր երկրի գյուղատնտեսության 150 հազար առաջավորներ, գյուղատնտեսների և տեխնիկների պատանի օգնականներ,— նայելով իր նշումների գրքույկին, ասում է ջոկատավարը:*

*Նա պատմում է, որ մինչև ցուցահանդեսի բացումն ինքը եղել է այստեղ և տեսել, թե ինչպես է ընթանում մի ամբողջ քաղաքի շինարարությունը: Այդ վայրում հենց վերջերս Մոսկվայի Ալեքսեևյան արվարձանն էր, որը հարկ եղավ տեղափոխել մի ուրիշ տեղ: Այժմ ամբողջ քաղաք-ցուցահանդեսում բարձրացել են գեղեցիկ շենքեր, տարածված են ընդարձակ հրապարակներ, լայն ծառուղիներ: Ցուցահանդեսում կան բազմաթիվ ղբոսայգիներ, շատրվաններ, քանդակներ: Նա գրավում է ավելի քան երկու հարյուր հեկտար տարածություն: Այդ տարածության վրա 307 տարբեր կառուցվածք կա. նրանցից յոթանասունվեցը պավիլիոններ են: Ցուցահանդեսը պատրաստելու համար այստեղ աշխատում էին միայն մոտ 2000 նկարիչ: Ամբողջ աշխարհում չի եղել այդպիսի գյուղատնտեսական ցուցահանդես, որի նախապատրաստմանը զբաղված լինեին այդքան գյուղատնտեսներ, ինժեներներ, բըժիշկներ, զոոտեխնիկներ, տրակտորիստներ, լուսանկարիչներ և ուրիշ շատ մարդիկ:*

*Մինչև ցուցահանդեսը մնում էր մի քանի կանգառ. դրա համար էլ ջոկատավարին նորից խնդրեցին էլի պատմել: Երեխաների խնդրանքին միացան ուղևորները և նույնիսկ կոնդուկտորը: Ջոկատավարը ժպտաց և ասաց.*

*— Այժմ, ընկերներ, կգնանք և դուք ամեն ինչ ինքներդ կտեսնեք: Բայց եթե ուզում եք, ես ձեզ կպատմեմ, թե ինչպես են այստեղ*

բերվել էքսպոնատները։ Ամեն օր գնացքներով, ինքնաթիռներով և ավտոմեքենաներով ցուցահանդես են բերվել հացահատիկ, հերբարիումներ, պտուղներ, ծառեր, մեքենաներ և այլն։ Բացի այդ բերված են ժողովրդական ստեղծագործության շատ նմուշներ։ Այդ բոլորն այստեղ է հասել տարբեր ռեսպուբլիկաներից, մեր երկրի բազմաթիվ անկյուններից...

— Կանգառ՝ Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդես,— ջոկատավարի խոսքն անսպասելի կտրեց կոնդուկտորը և տրոլեյբուսը կանգ առավ։ Ուղևորներն սկսեցին շտապ իջնել։

Առաջինը, որ միանգամից աչքի ընկավ, դա մեծ հաղթական կամարն էր։ Դրա վրա հաստատված էր տրակտորիստի և կոլտնտեսուհու քանդակը, որոնք բարձր պահել են ցորենի ոսկե խուրձը։

— Այդ քանդակը ձեզ, երեխանե՛ր, երևի ծանոթ է թերթերի և ամսագրերի նկարներից. դա ցուցահանդեսի խորհրդանիշն է,— ասաց ջոկատավարը։



Գյուղատնտեսության մեխանիզացիայի և էլեկտրիֆիկացիայի պավիլիոնը։ Ֆոտո՝ ՏԱՍՍ

Պիոներներից ամենափոքրը, փայլուն մազերով, պեպենոտ մի տղա, զարմացած աչքերով նայեց հսկայական կամարին և գոչեց.

— Օ՛յ, ի՜նչ մեծն է։

— Այո,— ասաց ջոկատավարը,— միայն քանդակը ութ մետր է։

Անցնելով կամարի տակից երեխաները միանգամից ընկան կանաչների և ծաղիկների թագավորությունը։ Ընդարձակ հրապարակն ամբողջովին ծածկված էր հոտավետ, դեռափթիթ ծաղիկների սպիտակ գորգով։ Սպիտակ ֆոնի վրա երևում էին վարդերի շարքերը, վարդերից այն կողմը՝ խնձորենիներն էին, խնձորենիների հետևը՝ գնդաձև լորենիները։ Իսկ նրանցից էլ հեռու բարձրանում էր գլխավոր պավիլիոնի հոյակապ շենքը։

Դա մի հսկայական կառուցվածք է. նրա վրա, արևի տակ, փայլում է ոսկեզօծ սրածայրը, որը պսակված է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի ոսկե աստղով։

Երեխաները մի քիչ մոտեցան և նայեցին շենքի վրա միութենական ռեսպուբլիկաների բրոնզե տասնվեց գերբերին ու Սովետական Միության հսկայական ոսկեզօծ գերբին։ Շենքը հատկապես գեղեցիկ էր երևում հրաշալի սյուների, սլացիկ քանդակների, պատերի բազմաթիվ խորաքանդակների շնորհիվ։

Մտան շենքը։ Ի՜նչ ասես չկար այնտեղ։ Տասն ընդարձակ դահլիճներում երեխաները տեսան լուսանկարներ, նկարներ, մակետներ, հազարավոր տարբեր էքսպոնատներ, որոնք պատմում էին, թե ինչպես են զարգացել մեր կոլտնտեսային և սովետական տնտեսությունները, սովետական գիտության և կուլտուրայի, խաղաղության համար սովետական ժողովրդի մղած պայքարի մասին։ Երեխաները հատկապես երկար կանգնեցին մի մեծ խորաքանդակի առաջ, որը կոչվում է՝ «Սովետական ժողովուրդը խաղաղության դրոշակակիրն է»...

Մյուսները՝ միութենական ռեսպուբլիկաների պավիլիոններն են։

Ահա Ռուսաստանի և Բելոռուսիայի պավիլիոնները։ Նրանց առաջ շարված են շքեղ կեչիները և եղևնիները։ Ահա խիժափիճին Սիբիրի պավիլիոնի մոտ, իսկ անապատի բնակիչ սաքսաուլը՝ Միջին Ասիայի ռեսպուբլիկաների պավիլիոնների մոտ։ Վրաստանի պավիլիոնը զարդարում է թեյի թփերի մի բլրակ. իսկ Հայաստանի պավիլիոնի մոտ

բարձրանում են Արարատյան դաշտին բնորոշ բարդիներն ու նրանց տակ՝ խաղողի թփերը։

Երեխաներն իմացան, որ պավիլիոնները հրաշալի ձևավորված են գրանիտով ու մարմարով, կերամիկայով և մայոլիկայով, գունավոր ապակիով և մոզայիկայով, ծեփով և փայտի ու քարի վրա կատարած փորագրությամբ։

Ջոկատավարը երեխաներին առաջարկեց դիտել ռեսպուբլիկական պավիլիոններից մեկը՝ Հայկականը։

Մտան։ Առաջին դահլիճի կենտրոնում նրանք տեսան տարօրինակ ձևի մի մեծ ջրավազան։ Պավիլիոնի աշխատակիցը պատմեց երեխաներին.

— Սա Սևանա լճի փոքր պատճենն է։ Ահա նայեցեք. այնտեղ լողում է իշխան ձուկը, որը բերված է լճից...

Երեխաները քայլում էին դահլիճից-դահլիճ և ծանոթանում Սովետական Հայաստանի լավագույն բամբակագործների ու խաղողագործների, անասնաբույծների և պանրագործների հետ։

Անասնապահական փոքրիկ քաղաքում նրանք դիտեցին կենդանի էքսպոնատները՝ տիպային անասնապահական ֆերմաները, կաթ վերամշակող գործարանները։ Գյուղատնտեսության մեխանիզացիայի և էլեկտրիֆիկացիայի պավիլիոնում երեխաները տեսան ապակեպատ կամարների տակ դասավորված հազարավոր ամենատարբեր մեքենաներ, որոնք օգնում են գյուղատնտեսության աշխատողներին։ Այդ պավիլիոնն ուներ 26 դահլիճ։

Այնուհետև գալիս էին «Հացահատիկ», «Տորֆ», «Կարտոֆիլ և բանջարեղեն», «Անասնաբուծություն» պավիլիոնները, թռչունների ֆաբրիկաները, այգիները։

Հատկապես հետաքրքիր էր «Նոր Սովետական գյուղը» բաժինը։ Այստեղ կառուցված էր մի ամբողջ գյուղ։ Հետո մտան ապակե գմբեթ ունեցող մի գեղեցիկ շենք՝ «Պատանի բնասերների պավիլիոնը»։ Այդ պավիլիոնում կային շատ տղաներ ու աղջիկներ՝ ցուցահանդեսի մասնակիցներ, որոնք իրենց դպրոցամերձ հողամասերում ստացել են բարձր բերք, օգնել են աճեցնելու կովեր և ոչխարներ, ռադիոֆիկացրել և էլեկտրիֆիկացրել են իրենց դպրոցները, կոլտնտեսությունները, ակումբները...



Երևանի պատանի բնասերների կենտրոնական կայանի պտղաբուծական խմբակի անդամներ՝ Էլլադա Սեֆիլյանը և Սվետլանա Ավդալյանը իրենց աճեցրած ծառի բերքն են հավաքում։ Նրանք Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցներ են։

Ֆոտո՝ ՀԵՔԵՔՅԱՆԻ

Ուշ երեկոյան հոգնած, բայց շատ գոհ նրանք վերադարձան տուն։ Տպավորությունները այնքան ուժեղ էին, որ դեռ երկար շարունակվում էին խոսակցությունները։

— Ի՜նչ հետաքրքիր էր կանաչի շատրվանը...

— Ինչքա՜ն գեղեցիկ էր պատրաստված մեխանիզացիայի պավիլիոնը...

— Ի՜նչ հրաշալի էին մրգերը Հայկական պավիլիոնում...

Իսկ նա, ով ամենից շատ էր հիացել, փայլուն մազերով պեպենոտ տղան, մտածկոտ ասաց.

— Ես երբեք չեմ մոռանա, ինչ որ այսօր տեսա ցուցահանդեսում։

# ՓՈՔՐԻԿ ՀՈՎԻՎԸ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

Սարերում հեռու մայր մտավ արփին,
Գիշերը մութ է դանդաղ տարածում,
Կաղնու անտառն է շշուկով նրբին
Ամռան հովի հետ անուշ զրուցում:
Երգում են սարի ջրերը զնգուն,
Երազի նման ջրերը թովիչ,
Հոտի առջևից հովիվն է գնում,
Իսկ ժիր թոռնիկը հոտի հետևից:
Հովվի թոռնիկը Մուշեղն է մեր քաջ,
Որ ամեն ամառ սարում է լինում,
Պապիկն էլ նրան հանդերում կանաչ
Սարերի մասին շատ բան է պատմում:
Բինան է գնում ոչխարը կամաց,
Առջևում քայլող այծն է մկկում.
Եվ բարձր սարի ուսից ամպամած
Լուսինն է Լոռվա հանդերին նայում:
Աստղերն են տեղ-տեղ փայլում վերևում.
Խաղաղ գիշեր է: Մոտիկ է բինան:
Հեռվում լամպերի լույսն է երևում,
Տեղ են հասնելու, թե քիչ էլ գնան:
Բայց ահա ճամփի թփերին մոտիկ,
Լուսնի լույսի տակ ստվերներ անցան,
Լսվեց խշշոցը թփի ու խոտի,
Հոտին մոտեցող ծանր ոտնաձայն:
Ահից սարսափած ոչխարը խրտնեց,
Լցվեց Սալկուտի ձորերը երկու.
— Մուշե՛ղ ջան, հասի՛ր, գայլը կոտորեց,—
Թնդաց չոբանի ձայնը ահարկու:

Ու մինչ Մուշեղը հասներ պապիկին,
Շները արագ գայլերին հասան.
— Հե՜յ, օգնեք, Հայրո՛, քեռի՛ Հովակիմ,
Հե՛յ, Փաշո՛, Մադո՛, հե՜յ, Ալի՛, Հասա՛ն...
Եվ աղմկելով Մադոն է գալիս,
Փաշոն է վազում ու Դալի Մոսին,
Անտառների մեջ գոչում է Ալին,
Հայրոն է հասնում Մատուռի փոսին:
Ահա լսվեցին պայքյուններ ուժգին.
Մեր սարի խորունկ անտառը թնդաց.
Տագնապով լցվեց Մուշեղի հոգին,
Արցունքը սառեց աչքերում իր բաց:
Գայլերը փախան... Բայց մեկին ահա
Շներն են խեղդում Սալկուտում բռնած,
Մուշեղն է վազում ձեռքին մի մահակ,
Օգնում շներին, սիրտ տալիս նրանց:
— Հիմա քեզ տեսնեմ, Բասա՛ր ջան, Բասա՛ր,
Բինում շուն չկա քեզնից համարձակ.
Ղայթա՛ր ջան, դու էլ ինչքա՜ն շուտ հասար,
Ապրես դու, Թոքլա՛ն, ապրես դու Միկչա՛գ:
Պապիկը ծեր է և մնաց հեռվում,
Մենք ենք միասին հոտը ազատել,
Բայց ափսոս մեր այս գիշերվա կռվում
Զամբարն ու Լոքին խեղդվել են արդեն:
Ասում է, զարկում գայլին ուժասպառ,
Շներն են պոկում մարմինը մաս-մաս...
Երգում են սարի աղբյուրները սառ,
Ու մեր կոլխոզի հոտն է անվնաս:



Ա. ՍԵԿՈՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Վաղ լուսաբաց էր: Բահն ուսին դրած ծերունի մի այգեպան առվից-առու էր անցնում: Հարկավոր էր վերջին ջուրը տալ այգուն: Նա չէր մոռացել այն երկու պիոներներին, որոնք նախորդ օրը եկել էին իր մոտ և ասել, որ ուզում են իրենց ճամբարի կենդանաբանական անկյունը հարստացնել. ծերունին ինչո՞վ կարող էր օգնել: Այգեպանը հայտնել էր, որ իրենց այգիներում երբեմն ոզնիներ էին պատահում, որոնք ոչնչացնում էին զանազան վնասատուներ, ինքը թույլ կտա նրանց, որպեսզի մի հատ բռնեն: Իսկ*

մի աղվես ընտրում և ուտում է այգու ամենաքաղցր ողկույզները։ Ա՜յ թե հնարավոր լիներ բռնել դրան էլ...

Վերջապես հեռվից երեխաների ձայներ լսվեցին։ Այգեպանը ձեռքով արեց նրանց։ Երեխաներն արագացրին քայլերը. ո՞վ գիտե, գուցե ծերունին որևէ կենդանու հետք էր նկատել։

Քիչ հետո այգեպանը նրանց այնպիսի մի վազի առջև կանգնեցրեց, որի վրա մի հատիկ խաղող էլ չէր մնացել։

— Տեսնո՞ւմ եք, երեխաներ, այս բոլորն աղվեսն է տարել,— խոսեց ծերունին։ Ես անպայման պիտի խփեմ նրան։

— Քեռի՛, մի՛ խփեք, խնդրում եմ,— հանկարծ խոսեց փոքրամարմին մի տղա.— Ես թակարդ կդնեմ...

— Ճիշտ է, ճիշտ է, Կարոյի նման թակարդ պատրաստող չկա,— ձայնեցին այս ու այն կողմից։

Ծերունին ձեռքը թափ տվեց։

— Է՜, այնքան թակարդ եմ դրել, բայց սատանան գալիս է մոտիկ, հոտոտում և իսկույն ծլկում է։ Հիմա ամեն մեկդ մի կողմով վեր բարձրացեք, մինչև ջրված այգիները. անպայման ոզնու կհանդիպեք։

Երեխաներն իսկույն ցրիվ եկան այգով մեկ ու սկսեցին ուշադիր տնտղելով առաջ շարժվել։ Այգեպանը ձեռքի շարժումներով հասկացնում էր նրանց, թե որ կողմը պետք է գնային։

Երբեմն Կարոն այնպե՜ս էր ցանկանում վազելով անցնել մարգերը. բայց անմիջապես հիշում էր իր կարդացած այնքան հետաքրքրական պատմվածքները որսորդության մասին. ամենից առաջ որսորդը պետք է չափազանց զգուշավոր ու համբերող լինի, թեկուզ որսն օրերով ուշանա։

Կարոն այնպես էր տարվել իր մտքերով, որ քիչ մնաց ոտքը մի կլոր ու խոշոր ողկույզի վրա դներ։ Նա ուղղակի ցատկեց նրա վրայով, շրջվեց և ուզեց վերցնել, բայց իսկույն ձեռքը ետ քաշեց։ Տարօրինակ ողկույզը դանդաղ շարժվում էր։ Ուշադիր նայելուց հետո տղան հազիվ զսպեց իրեն, որպեսզի ուրախության ճիչով իր գլխին չհավաքեր մյուսներին։ Ողկույզն իրենից ներկայացնում էր մի փշագունդ, որի ասեղների վրա ասես մի վարպետ ձեռք մեկիկ-մեկիկ ամրացրել էր խաղողի շիկավուն հատիկները։

Կարոն ձեռքով արեց, և մի երկու րոպեից նրան շրջապատեցին հետաքրքրված տղաները. մոտեցավ և այգեպանը։



...տարօրինակ ողկույզը դանդաղ շարժվում էր:

— Ոզնին էլ իր ավարն այսպես է տանում,— սկսեց բացատրել ծերունին։— Հատիկները թափում է ցած, ինքն էլ մեջքով պառկում է վրան. և հատիկներով ծածկված գնում է իր բույնը։ Հիմի, Աշո՛տ ջան, ձեռքիդ փալասը գցիր վրան ու վերցրու։

Աշոտը թերահավատորեն նայեց ընկերներին։

— Գցիր, գցիր,— խրախուսեցին տղաները։

Իսկ ոզնին տեղում արդեն քարացել և սպասում էր։

— Սա էլ նշանակում է ո՞րս անել,— դժգոհում էր Կարոն։— Ախր մի տեղ, որ ոչ հրացան պետք գա և ոչ էլ թակարդ, էլ ի՞նչ հետաքրքրություն։

— Եթե այդքան վարպետ ես, ես չեմ խփի այդ աղվեսին,— հրաժեշտ տալիս լուրջ ասաց այգեպանը.— բռնիր նրան, եթե կարող ես։

Երեխաների հայացքը մնացել էր Կարոյի կողմը։

— Ես չեմ հետապնդի... թակարդներ կդնեմ... մինչև ճամբարից տուն գնալը կըս-

պասեմ... այնպիսի թակարդներ դնե՞մ...

Ծերունին գլխով արեց:

Մոտենում էին ճամբարային վերջին օրերը: Երեխաներից յուրաքանչյուր խումբ իր վրա էր վերցրել կենդանաբանական անկյան այս կամ այն կենդանու խնամքը: Որքա՜ն մեծ էր նրանց ուրախությունը. քաղաք վերադառնալով նրանք այդ կենդանիներին հանձնելու էին իրենց դպրոցների բնագիտական կաբինետներին: Միայն Կարոյի դեմքին ոչ մի ժպիտ չէր երևում: Ախր բոլոր ճամբարներում էլ լսել էին իր որսորդության մասին և գալիս էին տեսնելու թակարդները: Հիանում էին բոլորն էլ, բայց վերջում ավելացնում էին.

— Իսկ այդ աղվեսին այդպես էլ չհաջողվեց բռնել...

Կարոն ավելի էր անհանգստանում, երբ օրերն իրար հետևից անցնում էին ապարդյուն: Երբեմն տղան մենակ էր այցելում այգեպանին, զրուցում նրա հետ:



Երբեմն տղան մենակ էր այցելում այգեպանին:

— Երեկ անպիտանն ուղղակի մոտեցավ թակարդին, բայց էլի փախավ,— ծխախոտի ծուխը թավ բեղերի մեջ խեղդելով խոսում էր այգեպանը:— Մարդու հոտ է առնում: Մի անգամ էլ ուղղակի առջևովս անցավ. ուզեցի կրակել, բայց մեկ էլ հիշեցի, որ ուզում եք կենդանի բռնել ձեր անկյան համար, հրացանս ցած իջեցրի:

Լսում էր Կարոն և իրեն հանդիմանում. ուրեմն իր պատճառով չի կրակել նա, և աղվեսը դեռ պիտի շարունակի գողությունը: Իսկ թե ե՞րբ կընկնի թակարդի մեջ՝ հայտնի չէր:

Այդ օրը Կարոն թակարդը տեղափոխեց և այնպիսի ուժեղ բուրմունք արձակող ծաղիկներ շաղ տվեց վրան ու շուրջը, որ դժվար մարդկային որևէ հոտ զգացվեր: Բայց... երկու օր հետո իրենք թողնելու էին ճամբարը. դժվար թե որևէ բան ստացվեր:

Օրը մի քանի անգամ Կարոն դուրս էր գալիս ճամբարից ու երկար ժամանակ նայում էր այն ճանապարհին, որը ձգվում էր դեպի այգիները. ծերունին նրան ասել էր, որ եթե մի բան պատահի, ինքը կերևա...

Վրա հասավ գնալու օրը: Բոլորը եռանդով կարգավորում էին իրենց ճամպրուկները: Միայն Կարոն էր դանդաղում: Եթե դասերն այդքան մոտ չլինեին, նա մի քանի օր կմնար, միայն թե որևէ հաջողության հասներ: Բայց ահա ավարտվեց և վերջին ճաշը: Ավելի հաճախ սկսեցին լսվել մեքենաների ազդանշանները. հարկավոր էր շտապել:

— Վեր կաց, Կարո՛, միևնույն է, մի օրում ոչինչ չի լինի,— խոսեց Աշոտը,—հարկավոր է կենդանիներին փոխադրել մեքենա:

Կարոն լուռ հետևեց ընկերոջը: Երեխաները շրջապատել էին այն մեքենան, որը հատկացված էր կենդանիներին և որի մեջ էլ տեղավորվեցին Կարոն ու Աշոտը:

— Քեռի՛, կարելի՞ է այս խճուղիով գնանք,— թախանձանքով մեքենավարին դիմեց Կարոն. ուզում եմ վերջին անգամ հանդիպել այգեպանին:

— Ճիշտ է, քեռի՛, շատ ենք խնդրում,—աղմկեցին երեխաները: Նրանց միացավ և ջոկատավարը:

Քիչ հետո մեքենաներն սկսեցին դանդաղ շարժվել դեպի այգիները:

*— Կարո՛, Կարո՛, այն ո՞վ է ձեռքերը շարժում ճանապարհի վրա,— միաբերան ձայն տվեցին մեքենաների միջից,— այգեպանը չի՞:*

*Կարոն ավելի ձգվեց թաթերի վրա և ձեռքը հովանի դարձրած հայացքն ուղղեց դեպի խճուղու վերջը: Ճիշտ է, նա է, ծերունի այգեպանը, որ գալիս է իրենց կողմը: Կարծես թե ձեռքին ինչ-որ բան ունի նա... Բայց բոլորովին էլ աղվեսի նման չի... Մեքենաները կանգնեցին, բոլոր երեխաները ցած թափվելով շրջապատեցին ծերունուն, որն շտապ փնտրում էր Կարոյին:*

*— Թակարդդ վերցրու.— այս ասելով նա Կարոյին մեկնեց վերջին թակարդը, որի մեջ մնացել էր շիկավուն աղվեսի ջարդված մի թաթ:*

*Տղան տարակուսանքով նայում էր մեկ թակարդին, մեկ ծերունուն:*

*— Դու քեզ արդարացրիր, տղա՛ս, թակարդը շատ լավն է ու աղվեսն էլ ընկել է մեջը: Բայց արի տես, որ նա ծամել ու կտրել է թակարդն ընկած իր թաթը և փախել երեք ոտքով,— գլուխը տարուբերելով բացատրեց այգեպանը:— Այսպիսի բան առաջին անգամն եմ տեսնում:*

*Երեխաներն ու ջոկատավարները սառած նայում էին ծամծմված թաթին, որի վրա արյան մուգ հետքեր էին մնացել: Ա՛յ քեզ կա՜մք. ծամել սեփական թաթը... Կարոն բառ չէր գտնում ասելու: Դե, իհարկե, անհնարին էր ողջ-ողջ բռնել այդպիսի մի գազանի:*

*— Հայրի՛կ, ես որոշել էի եկող տարի էլ այս կողմերը գալ, միայն թե բռնեի այդ աղվեսին... Բայց ինչո՞ւ իզուր ահագին վնաս հասցնի ձեզ... խփեք նրան... հրացանով խփեք...*

*Ծերունին շոյեց տղայի գլուխը և ժպիտով վրա բերեց.*

*— Բան չկա. գիշեր-ցերեկ կհսկեմ այ-*



...գլխարկը թափահարելով հրաժեշտ էր տալիս:

*գում, մենակ թե աղվեսին բռնեմ ու պահեմ քեզ համար... կգա՞ս:*

*Կարոն գորովանքով նայեց ծերունուն և ամուր բռնեց նրա կոշտացած ու խոշոր ձեռքերը:*

*— Կգամ, անպայմա՛ն կգամ...*

*Երբ մեքենաները թեքում էին իրենց ճանապարհը, երեխաները վերջին անգամ տեսան այն բարի ծերունուն, որը գլխարկը թափահարելով նայում էր իրենց հետևից: Պիոներներն իսկույն հանեցին իրենց փողկապները և սկսեցին թափահարելով հրաժեշտ տալ նրան...*

# ԿԵՍՕՐԻՆ

*Վ. ԱՆԱՆՅԱՆ*

*Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*

Շոգ է, անտանելի շոգ: Օգոստոսի բարկ արևը կրակ է թափում Արարատյան դաշտի վրա: Դեռ արևածագից առաջ ես բարձրացել եմ և թաքնվել ժայռերում. քարայծերի ցերեկային կյանքն եմ ուսումնասիրում:

Հիմա, կեսօրին, այնպես են տաքացել դեղնագույն ապառաժները, որ ես տեսնում եմ, թե ինչպես տաքացած օդի ալիքներ են ծփում դեպի դաշտ: Ոչ մի կենդանի. բոլորն էլ թաքնվել են անձավներում, ճեղքերում, հողի տակ: Օձերն անգամ գետնի տակ են անցել. այնպե՜ս շոգ է բուսականությունից զուրկ այդ վայրերում:

Միայն մի արու արծիվ լուռ ու մռայլ կանգնել է ժայռի ատամներից մեկին: Իսկ ես վայրի ունաբի թառամած մի թփի մեջ թաքնված՝ դիտում եմ այդ արծվին ու մտածում. կիզիչ արևից ինչո՞ւ չի պաշտպանվում

այս թռչունը: Ժամերով անշարժ կանգնած է նա իր բարձունքին ու զգոն պահակի նման իմ կողմն է նայում: Նայում է ուշադիր, կասկածանքով: Վտա՞նգ է սպասում ինձնից.



...հով է անում ձագերին։

թևեր ունի, կարող է թռչել-հեռանալ: Թե՞ պահակ է կանգնած ուրիշների կյանքին, որոնք չեն կարող հեռանալ այստեղից: Պիտի լուծեմ այդ հանելուկը:

Հայացքով խուզարկեցի ժայռի ծերպերը: Ահա, արծվի դիմաց, ժայռի անմատչելի բարձունքին չոր ճյուղերի ծայրեր են երևում:

Ետ սողացի, անցա մի բարձր քարի հետև և նրա քիկունքով զառիվեր բարձրացա: Եվ երբ զգուշությամբ գլուխս հանեցի քարի հետևից, առաջս, ապառաժի զոգին մի կույտ չոր ճյուղեր տեսա, որոնց վրա կանգնած էր մի խոշոր մուգ թռչուն և թափահարում էր իր թևերը: Ի՞նչ է անում այս թռչունը այրող արևի տակ, ինչո՞ւ չի պատսպարվում անձավի հովում: Եվ ինչո՞ւ թևերը թափահարում է, բայց չի թռչում:

Զգույշ և աննկատելի վեր ձգվեցի և նայեցի ուշադիր. երկու ձագ կտուցները վեր ցցած, պարանոցները հանույքով դեմ էին արել այն մեղմ քամուն, որ գալիս էր իրենց մոր թևերից: Ահա, թե ինչու է անընդհատ թափահարում իր թևերն այս թռչունը. իր ահագին թևերով հով է անում ձագերին...

Շոգ է, անտանելի շոգ Արարատյան դաշտի վրա կախված այս ժայռերում: Բոլոր շնչավորները թաքնվել են շոգից: Միայն այս փետրավոր ծնողներն են կանգնած միջօրեի արևի տակ, մեկն իր բնտանիքի պահակն է, մյուսը հով է անում սիրասուն ձագերին:

# ԱՐԿԱԾՆԵՐ ՈՐՈՆԵԼԻՍ

Ա. ԶՈՒԵՎ

Պիես երեք պատկերով

Նկ. Ան. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՔ

ԻԳՈՐ
ՏՈԼՅԱ } Դպրոցականներ
ՊԵՏՅԱ

ԱՌԱՋԻՆ ՊԱՏԿԵՐ

Մի փոքրիկ սենյակ: Սեղան, երկու-երեք աթոռ, բազմոց, գրքերի դարակ, պատին փակցված աշխարհագրական քարտեզ: Իգորը թեք ընկած բազմոցին գիրք է կարդում: Հետո հանկարծ վեր է թռչում, գիրքը դնում է սեղանին, ապա մոտենում է աշխարհագրական քարտեզին և ուշադիր նայում է:

ԻԳՈՐ — (Հուզված) *Ես պետք է այդ անեմ։ Հենց այսօր կպատրաստվեմ։ Կկազմեմ պլան և կճանապարհվեմ։ Եթե չգտնեմ մի խիզախ ընկեր, մենակ կմեկնեմ։ Էլ չպետք է տատանվել։* (Դրադարանից վերցնում է մի թուղթ, նստում է սեղանի մոտ և ինչ-որ բան է գրում: Մտածում է և հետո նորից մոտենում է քարտեզին: Ներս է գալիս Տոլյան):

ՏՈԼՅԱ — *Ինչո՞վ ես զբաղված։* (Մոտենում է սեղանին) *Նորից «Ռոբինզոն Կրուզո»։ Իսկ սա ի՞նչ է։* (Վերցնում է սեղանի վրայից թուղթը և կարդում է): *Պլա՞ն...*

ԻԳՈՐ — (Տոլյայի ձեռքից արագ խլում է թուղթը): *Գիտես, Տոլյա՛, ուրիշի գաղտնիքներով հետաքրքրվելը դա...*

ՏՈԼՅԱ — *Գաղտնիքներո՞վ... Ների՛ր, ես չգիտեի։*

ԻԳՈՐ — (Շփոթված) *Դե դա գաղտնիք չէ, այլ պարզապես քեզ կարող է անհետաքրքիր թվալ։*

ՏՈԼՅԱ — *Ահա թե ի՞նչ։ Իսկ ի՞նչ պլան է դա։*

ԻԳՈՐ — (Անհամարձակ) *Գիտես ինչ... Դե ես ճիշտն ասած ուզում էի քեզ ասել... Միայն խոսք տուր՝ խոր գաղտնիք պահել և ինձ հակառակը չհամոզել։ Որոշված է վերջնականապես և կտրականապես։*

ՏՈԼՅԱ — (Կեղծ լրջությամբ) *Խոսք եմ տալիս։*

ԻԳՈՐ — *Դու մի՛ ծիծաղիր, շատ լուրջ գործ է։* (Վերցնում է ցուցափայտը և լայն շարժումով ցույց է տալիս Քարտեզի վրա): *Ես համոզված եմ, որ ահա այստեղ, Կովկասյան լեռնաշղթայի լանջերին, շատ անկյուններ կան, որտեղ մարդկային ոտք չի դիպել։ Որքա՜ն հետաքրքիր արկածներ կարող են պատահել այստեղ... Եվ ահա ես որոշել եմ, Տո՛լյա... Ես որոշել եմ և լրջորեն ասում եմ — դուրս գալ արշավի։ Դե չէ՞, ի՜նչ եմ ասում, ի՞նչ արշավ, դա երեխայի գործ է... Ես որոշել եմ իսկական ճանապարհորդություն կատարել, բոլորից գաղտնի։ Այսպես ավելի հետաքրքիր է։ Դ՛ե, դու մի՛ վախենա, ուսումնական տարեսկզբին ես տանը կլինեմ։*

ՏՈԼՅԱ — (Ձայնը փոքր գցած): *Այո՜... Բայց էդ մեկը չէի սպասում։*

ԻԳՈՐ — *Ինչո՞ւ ես այդպես զարմանում... Տո՛լյա, արի միասին, հը՞... Գիտես ի՜նչ հետաքրքիր է, եթե մեկի հետ մի արկած կպատահի, ապա երկուսի հետ երկու անգամ ավելի։*

ՏՈԼՅԱ — *Ախր այդպիսի ճանապարհորդությունները կատարում են ամեն ինչով պատրաստված մեծահասակ տուրիստները։ Իսկ մե՞նք... Մեզ հետ կարող է մի որևէ դժբախտություն պատահել։ Կարող ենք մոլորվել, կամ գիշատիչ գազանների հանդիպել... Իսկ լեռներում ինչպիսի՜ հեղեղներ են լինում, փլուզումներ...*

ԻԳՈՐ — *Է՛հ, Տո՛լյա, ես քո մասին այլ կարծիքի էի... Սխալվել եմ։ Դու ուզում ես արկածներ առանց վտանգի... էլ ի՞նչ արկածներ կլինեն դրանք։ Մենք, իհարկե, կպատրաստվենք ինչպես հարկն է և զգույշ կլինենք։ Կարող է մոլորվե՞նք... Բա ինչի՞ համար է կողմնացույցը։ Ասում ես գիշատիչ գազաննե՞ր. դրա համար էլ նետ ու աղեղ կպատրաստենք... Գիշերը խարույկ կվառենք։ Մեզ հետ, իհարկե, սննդամթերք կվերցնենք... Թակարդ կդնենք և թռչուններ կորսանք ու կխորովենք։ Անտառում էլ գիտես ինչքա՜ն հատապտուղներ կան... Դե՛, հիմա ի՞նչ կասես։*

ՏՈԼՅԱ — *Դու արկածնե՞ր ես ուզում։*

ԻԳՈՐ — (Ոգևորված): *Այո։*

ՏՈԼՅԱ — *Դե մենք էլ կգտնենք։ Ես հենց դրա համար եմ եկել քեզ մոտ, որ այդ մասին խոսենք։ Հիշում ես, Իվան Վասիլևիչն առաջարկեց ամռանը կազմակերպել էքսկուրսիա դեպի Զմեյկա գետի ակունքները։ Արշավը ղեկավարելու է Իվան Վասիլևիչը։ Այս տեսակ արշավին ծնողներն էլ դեմ չեն լինի։ Իսկ արկածներ, իհարկե, կլինեն։ Եվ ինչքա՜ն հետաքրքիր բաներ կիմանանք Իվան Վասիլևիչից...*

ԻԳՈՐ — (Ընդհատելով) *Ամեն ինչ պարզ է. վերջ տանք։* (Որոշ ժամանակ լուռ անցուդարձ է անում սենյակում): *Դա ուղղակի զայրացուցիչ է. լուրջ գործը համեմատել ինչ-որ երեխայական զբոսանքի հետ... Ի՞նչ արկածներ կարող են լինել ինչ-որ Զմեյկայի ակունքներում։*

ՏՈԼՅԱ — *Այնտեղ այնպիսի թփուտներ կան, որ միայն կացնով ճանապարհ կարող ես բացել։ Դե գիտես, ախր այնտեղ...*

ԻԳՈՐ — (Ընդհատելով) *Այդ բոլորն այնքան հասարակ է, մոտիկ ու հեշտ...*

ՏՈԼՅԱ — (Մտածելով) *Հը՞, ասում ես փորձե՞նք...*

ԻԳՈՐ — (Ուրախացած) *Իհարկե, Տո՛լյա, այդպիսի գործում հարկավոր է համարձակ լինել։ Ախր այն Ռոբինզոն Կրուզոն կամ ասենք Թոմ Սոյերը...*

ՏՈԼՅԱ — *Ճիշտ է. ես որոշեցի, միայն մի պայմանով։*

ԻԳՈՐ — *Ասա։*

ՏՈԼՅԱ — *Մեր անտառում ես մի փոքրիկ լիճ եմ հայտնաբերել. երևում է՝ աղբյուրներից է գոյանում. ինձ թվում է, որ նրա մասին դեռ ոչ որ չգիտե։ Գնանք վաղը ձկնորսության։ Այնտեղ ձուկ այնքան կա, որ՝ հա բռնիր ու բռնիր։*

ԻԳՈՐ — *Ախր, ինչո՞ւ իզուր ժամանակ կորցնել։*

ՏՈԼՅԱ — *Հրաժեշտի համար, Ի՛գոր։ Դու գիտես չէ՞, թե ես ինչքա՜ն եմ սիրում ձուկ բռնել։*

ԻԳՈՐ — *Այնտեղ, լեռներում ձուկ որսալու այնքա՜ն տեղ գտնենք։ Այդ քո ասածից շատ լավը։*

ՏՈԼՅԱ — *Քո ասածը՝ ինչպես թռչունը օդում. իսկ սա հաստատ է։ Ճանապարհին մենք մի լավ կխորհրդակցենք մեր ճանապարհորդության մասին։ Ձուկ որսալու պարագաները ես ինքս կպատրաստեմ։*

ԻԳՈՐ — *Դե լավ։ Իսկ ես նետ ու աղեղ կվերցնեմ. մի լա՜վ կվարժվենք։ Միայն տես հա՜, ձկնորսությունից հետո անմիջապես սկսենք պատրաստվել մեկնելու։*

ՏՈԼՅԱ — *Իհարկե։ Վաղը ես շուտ կգամ։ Պայմանավորվեցինք։* (Հեռանում է):

ԻԳՈՐ — (Խորը շնչելով): *Իզուր ժամավաճառ էի լինում... Ուղղակի իզուր։*

ՎԱՐԱԳՈՒՅՐ

## ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԿԵՐ

Անտառում՝ թփերով շրջապատված բացատ: Մի ճիճ կոճղ: Թփերից այն կողմը լսվում է Տոլյայի ձայնը. «Այս կողմը, Իգո՛ր, այս կողմը... Այս կողմում լույս է երևում... մի մտնիր այնտեղ, ջուր է, չե՞ս տեսնում՝ եղեգներ են...»

Բեմ են գալիս Տոլյան և Իգորը: Վերջինիս ձեռքին բռնված, կեղտոտված պայուսակ կա, մեջքին՝ աղեղը, կողքի պայուսակում՝ նետեր: Տոլյայի ձեռքին մի դույլ և ձուկ որսալու կարթեր են:

ԻԳՈՐ — *Ասում էի, ասում էի... այս ո՞ւր բերեցիր, ամեն տեղ ճահիճներ, ցեխ...*

ՏՈԼՅԱ — *Ամեն տեղ էլ այսպիսի անտառներ կան. հարկավոր է զգույշ լինել։*

ԻԳՈՐ — (Փնթփնթալով): *Զգույշ լինե՜լ. իսկ որտեղ է քո լիճը։ Երազում ես տեսել, ինչ է։ Ինչքա՜ն ժամանակ է, քայլում ենք։*

ՏՈԼՅԱ — *Ես էլ չգիտեմ, թե այս ուր է կորել։*



ԻԳՈՐ — Դե թող, դու էլ։ Դե հիմա մտածիր, թե ինչ ենք անելու։

ՏՈԼՅԱ — Իսկ դու ինչո՞ւ չես ուզում մտածել։

ԻԳՈՐ — Քո փոխարե՞ն մտածեմ, ինչ է։ Ինքդ բերեցիր, ինքդ էլ հիմա այստեղից դուրս բեր։

ՏՈԼՅԱ — Դա ընկերություն չէ, Ի՛գոր։ Արի միասին մտածենք։ Հիմա արդեն ձկնորսություն չի լինի։ Հակառակի պես երկինքն էլ ամպամած է։ (Մտնում է գալիս բացատում և վերև նայում)։ Փորձենք կողմնորոշվել։ Կարծես արևն ահա այնտեղ է։ Ուրեմն, հիմա կեսօր է։

ԻԳՈՐ — Կեսօ՞ր։ Մենք կարկանդակները ե՞րբ կերանք, մի երկու ժամ առաջ։ Այ, այն ժամանակ էլ կեսօր էր։

ՏՈԼՅԱ — Այ, տեսնում ես, առանց ժամացույցի արևով էլ դժվար է ժամանակը որոշել։ (Նստում է կոճղի վրա)։ Հիմա ի՞նչ պիտի անենք։ (Հանկարծ վեր թռչելով)։ Ի՞նչ հիմարներն ենք եղել մենք։ Նստել ենք կոճղի վրա... իսկական կոճղը ես եմ։ Հասկանո՞ւմ ես...

ԻԳՈՐ — Հասկանում եմ. դու իրոք կոճղ ես դարձել։

ՏՈԼՅԱ — Լավ, ծիծաղիր. իսկ չէ որ այս կոճղը մեզ կօգնի որոշել արևելքը։

ԻԳՈՐ — (Ուրախացած)։ Ճիշտ որ։ Ես լսել եմ կոճղի վրայի օղակների մասին, բայց արդեն մոռացել եմ։ Դու հիշո՞ւմ ես։

ՏՈԼՅԱ — Էհ, դո՛ւ... մոռացե՛լ եմ։ Եվ դեռ պատրաստվում ես ճանապարհորդելու։

ԻԳՈՐ — (Վեր թռչելով)։ Նորի՞ց... Վերջ պիտի տաս քո հիմար համեմատություններին։ Բոլորովին էլ հարկավոր չէ ինձ կոճղը։ Այնտեղ կոճղեր չկան, այնտեղ նախնադարյան բնություն է։

ՏՈԼՅԱ — Լավ, մի՛ հուզվիր, էլ չեմ ասի։ (Ձեռքով մաքրում է կոճղի կտրվածքը)։ Ուրեմն այն կողմը հարավն է։ (Ձեռքով ցույց է տալիս)։ Հիմա մենք դուրս կգանք։ Դե՞, ինչպես են ասե՞րդ։

ԻԳՈՐ — Հոգնել եմ։ Կատակ է՞ այսքան քայլելը։

ՏՈԼՅԱ — Ոչի՛նչ, հարկավոր է սովորել. գնանք։

ԻԳՈՐ — Ո՞ւր։

ՏՈԼՅԱ — Տուն։

ԻԳՈՐ — Իսկ որտե՞ղ է տունը, ես ինչ-որ չեմ իմանում։

ՏՈԼՅԱ — Նայիր (Գծում է գետնին)։ Ենթադրենք սա տուն է։ Մենք գնում էինք դեպի արևելք։ Այստեղ անտառն է։ Արևելյան կողմից մենք շատ հեռանալ չէինք կարող։ Մեր դիմացը հարավն է. ուրեմն արևմուտքը աջ կողմում է։ Ուրեմն, պետք գնանք դեպի աջ։

ԻԳՈՐ — Իսկ ինձ թվում է, որ տունը ձախ կողմում է։ Դե, լավ, գնանք (Գնում են։ Լսվում են ճռացող ձայներ։ «Մի՛ շտապիր»։ «Ես չեմ շտապում»։ Քիչ անց նորից ձայներ են լսվում)։

ԻԳՈՐԻ ՁԱՅՆԸ — Վա՛յ, օձը։

ՏՈԼՅԱՅԻ ՁԱՅՆԸ — Մի՛ վախենա, լորտու է...

ԻԳՈՐԻ ՁԱՅՆԸ — Իսկ ես կարծեցի իժ է։ (Լռություն. ձայներն այս անգամ լսվում են մոտիկից)։ Երևի շուտով այս անտառը կվերջանա։ Տե՛ս, լույս է երևում։ (Բացատ են գալիս Տոլյան և Իգորը)։

ԻԳՈՐ — Ուռա՛, անտառը վերջացավ։

ՏՈԼՅԱ — Ուռա՛... ահա թե ի՛նչ է նշանակում կողմնորոշվել գիտենալ։

ԻԳՈՐ — (Նայում է չորս կողմը)։ Բայց, սպասիր, ախր մենք կարծես թե այստեղ եղել ենք։ Տես նույն կոճղը և ծառը։ Էհ, դո՛ւ, կողմնորոշման մասնագե՛տ...

ՏՈԼՅԱ — Ի՞նչ հիմար բան ստացվեց։

ԻԳՈՐ — Քո պատճառով ենք պտտվում։ Իսկ ի՞նչ եղավ քո արևմուտքը։

ՏՈԼՅԱ — Կոճղը հո հետներս չէի՞նք տանելու։ Այստեղ ամեն ինչ պարզ է, իսկ այնտեղ սկսում ես շփոթել։

ԻԳՈՐ — Լավ, հիմա ի՞նչ անենք։

ՏՈԼՅԱ — Ավելի լավ է, գիշերենք այստեղ, քան թե անընդհատ պտտվենք. իսկ առավոտը արևելքը կերևա. այն ժամանակ հաստատ դուրս կգանք անտառից։

ԻԳՈՐ — Առավո՞տը։ Իսկ մեր ծնողներն ի՞նչ կմտածեն։

ՏՈԼՅԱ — Բա որ Կովկասյան լեռները փախչեինք, ի՞նչ պիտի մտածեին։ Թող վարժվեն։

ԻԳՈՐ — Պիտի թողնես, թե՞ ոչ։ Երբ այնտեղից վերադառնանք, մեր ծնողները մեզնով կհպարտանան. իսկ այստե՞ղ ինչ...

ՏՈԼՅԱ — Դե լավ, լավ. բռնկվում ես լուցկու նման։ Ճանապարհորդը պետք է զսպված և համբերատար լինի։

ԻԳՈՐ — Քեզ հետ խոսելիս միթե կարելի է զսպված լինել։ (Լռություն։ Տոլյան նստում է կոճղին, Իգորը տեղավորվում է ծառի տակ)։

ՏՈԼՅԱ — Ինչի՞ մասին ես մտածում։

ԻԳՈՐ — Երևի ես քեզ անտառից դուրս բերեմ։ Դու գիտե՞ս ինչու ենք մենք պտտվում և առհասարակ գիտե՞ս, թե մարդ ինչու է պտտվում, երբ ճանա-

պարհը կորցնում է. չգիտե՞ս. իսկ ես կարդացել եմ՝ գիտեմ։ Որովհետև բոլոր մարդկանց մի ոտքը մյուսից ուժեղ է։ Այդ ուժեղ ոտքն ավելի մեծ քայլ է անում, քան մյուսը։ Մարդը այդ չի նկատում, երբ նա գնում է առանց կողմնորոշվելու, սկսում է պտտվել։ Հիմա հասկանում ես, ինչպես պետք է գնալ։

ՏՈԼՅԱ — Բան չեմ հասկանում։

ԻԳՈՐ — Քո որ ոտքն է ուժեղը։

ՏՈԼՅԱ — Աջը։

ԻԳՈՐ — Իմն էլ։ Դրա համար էլ հարկավոր է այնպես գնալ, որ ձախը սովորականից մեծ քայլ անի. հասկանո՞ւմ ես, այն ժամանակ մենք միշտ ուղիղ գծով կգնանք։

ՏՈԼՅԱ — Դա հետաքրքիր է. արի հիմա փորձենք։

ԻԳՈՐ — Բայց կոշիկն իմ ձախ ոտքը հարել է։ Մենք այսպես կանենք, դու կգնաս առջևից, իսկ ես՝ հետևից և միշտ կհիշեցնեմ ձախ ոտքի մասին։

ՏՈԼՅԱ — Շատ լավ, ահա այնտեղ հարավն է, այնտեղ արևմուտքը, գնանք։ (Գնում են։ Լսվում է հեռացող Իգորի ձայնը։ «Ձա՛խը... մի՛ մոռանա ձախ ոտքի մասին... մեծ քայլը...» Որոշ ժամանակ լռություն է տիրում։ Հետո նորից լսվում է Իգորի ձայնը. «Ձախը, ձախը... գնա ուղիղ դեպի ծառը... թփերը մի՛ շրջանցի, վրայից կթռչենք»։ Տոլյան և Իգորը հակառակ կողմից գալիս են բացատ։ Տոլյան անմիջապես նստում է կոճղին)։

ԻԳՈՐ — Ա՛յ, հիմա կարելի է մի քիչ հանգստանալ։ Նորի՞ց բացատում... բայց սա ուրիշ բացատ է, ճի՞շտ է։ Այն բացատում ծառը, ա՛յ այնտեղ էր։ (Ցույց է տալիս հակառակ կողմը)։ Իսկ այստեղ կոճղ էր։ Ուրեմն լավ է, էլ չենք պտտվում։ (Նստում է ծառի տակ)։ Գիտե՞ս, եթե այստեղից դուրս գանք, իսկական հայտնագործություն կլինի, թե ինչպես առանց կողմնորոշվելու, քայլը մեծացնելով կարող է մարդ ուղիղ գնալ։ Դու ինչի վրա ես նստած։

ՏՈԼՅԱ — Կոճղի, միայն թե սա ուրիշ կոճղ է։

ԻԳՈՐ — (Վեր է կենում, կասկածանքով նայում է շուրջը)։ Ի՞նչ ուրիշ, նույնն է, ծառն էլ նույնն է։ Մենք անցել ենք հակառակ կողմը և ամեն ինչ շուռ է եկել։ Ահա, թե ինչ է նշանակում քեզ պատասխանատու գործ հանձնարարելը... Ինչու քեզ հետ գործ բռնեցի։

ՏՈԼՅԱ — Առաջին անգամ եմ այդ ձևի քայլում... Երևի շատ մեծ էինք անում քայլը ձախ ոտքով։

ԻԳՈՐ — (Արհամարհական)։ «Էի՞նք»։ Քեզ էր հանձնարարված հետևել ձախ ոտքին և ոչ թե ինձ։

ՏՈԼՅԱ — Կարծես թե ուշադիր էի հետևում։ Հարկավոր էր բացատրել, թե ինչքան պետք է քայլը մեծացնել։ Եթե...

ԻԳՈՐ — (Գրգռված)։ Քեզ մոտ միշտ եթեներ են... Այնպես էլ հանգիստ ես զգում քեզ, ոնց որ քո տանը։ Բա որ հանկարծ վաղն էլ այսպես պտտվենք...

ՏՈԼՅԱ — Լուսաբացը միշտ լավ է երևում. չենք պըտտվի։ Մի՛ ընկճվիր, ճանապարհորդների հետ այսպիսի բանե՞ր է, որ պատահում է։ Դուրս կպրծնենք։ Ավելի լավ է, արի մի բան ուտենք, ի՞նչ է մնացել ուտելու։

ԻԳՈՐ — (Նայում է պայուսակը)։ Հաց, երշիկ և մի քիչ էլ պանիր։

ՏՈԼՅԱ — Գիտես ինչ, արի խարույկ վառենք. ավելի ուրախ կլինի։ Հիմա չոր փայտ կհավաքեմ։ (Գնում է. մի քիչ անց վերադառնում է ցախ հավաքած)։ Այստեղ չոր փայտեր քիչ կան։ Դու կրակը վառիր, իսկ ես մի քիչ հեռու գնամ։ Առ քեզ լուցկին։ (Տալիս է լուցկին)։ Թուղթ չկա՞ քեզ մոտ, որ հեշտ վառես։

ԻԳՈՐ — (Պայուսակը դնում է կոճղին և գրպանները ստուգում)։ Ահա, գտա։ (Գրպանից հանում է մի թերթ թուղթ)։ Ո՞չ, սա վառել չի կարելի՝ մեր պլանն է։ Ես առանց թղթի էլ կվառեմ։ Գնա, բայց իրար ձայն տանք... (Տոլյան գնում է։ Մերթընդմերթ իրար ձայն են տալիս։ Իգորը փայտի կտորները դարսում և աշխատում է վառել խարույկը, բայց չի հաջողվում։ Նորից է հանում իր պլանը։ Մի քիչ նայում է, մտածում, հետո որոշակի դնում է փայտերի տակ և վառում է։ Փորձում է փչել։ Թուղթը վառվում է, բայց ապարդյուն։ Հանկարծ լսվում է ինչ-որ գազանի ոռնոց։ Իգորը սարսափած վազում է, բարձրանում ծառի գագաթը։ Բացատ է նետվում մի ինչ-որ վայրենի գազան)։



ԻԳՈՐ — (Բղավում է)։ Տո-ոլյա՛, շո՛ւտ, այստեղ արի՛... (Գազանը ոռնում է, մոտենում է կոճղին, հոտ է քաշում պայուսակից, վերցնում է այն և անհետանում թփերի հետև։ Քիչ անց նորից վերադառնում է)։ Տոլյա՛, շուտ եկ այստե՞ղ... փայտ վերցրու, խփիր սրան... (Գազանը մռնչալով մոտենում է ծառին, սկսում է ծառի բունը կրծել ու չանգռել։ Իգորը զինվում է նետով ու աղեղով և նետը շտապ բաց է թողնում ներքև։ Երկուսն ընկնում են կողքին, իսկ երրորդը

խճճվում է գազանի բրդին: Իգորն այս անգամ աղեղն է նետում դեպի նա: Գազանն այս անգամ գլխով ծառի բունն է հրում: Հայտնվում է Տոլյան՝ մի փայտ ձեռքին: Նա հարձակվում է գազանի վրա և սկսում է հարվածել նրա մեջքին):

ՏՈԼՅԱ — Ցած իջիր, Իգո՛ր, շո՛ւտ, մենք սրան հիմա կսպանենք։ (Գազանը փախչում է: Տոլյան վազում է նրա հետևից և վերադառնում):

ԻԳՈՐ — (Ծառի վրայից): Այդ, այդ ի՞նչ գազան էր…

ՏՈԼՅԱ — Արջ. երևի հատուկ ցեղի։ Իջիր, նա էլ չի գա։

ԻԳՈՐ — Կարող է պատահել՝ արջի քաթոթ էր։ Նրա մայրը երևի այս կողմերում լինի։ Գիտես, ավելի լավ է, դու էլ բարձրացիր ծառը։

ՏՈԼՅԱ — Ոչ մի մայր արջ էլ չկա այստեղ, իջիր։ Այս ի՞նչ է, դու խարույկը չե՞ս վառել…

ԻԳՈՐ — (Զգուշորեն ծառից իջնելով): Գիտես ինչ, փայտը մի քիչ թաց է և չի վառվում։ Լուցկին էլ վերջացավ։

ՏՈԼՅԱ — Այ քեզ բա՜ն։ Ի՞նչ անենք հիմա։ Դե լավ, արի մի քիչ նստենք, հետո կպառկենք քնելու։ Իսկ մեր պայուսակն ո՞ւր է։

ԻԳՈՐ — Գազանը տարավ…

ՏՈԼՅԱ — Տես, թե ուր է հասել։ Ես նրան կհիշեցնեմ այդ…

ԻԳՈՐ — Ուզում ես նրան փնտրել, ինչ է։

ՏՈԼՅԱ — Երբևիցե կարող է հանդիպեմ։ Ա՜խ, ի՜նչ լավ կլիներ, խարույկի մոտ հաց, պանիր, երշիկ ուտեինք։ Բայց ոչինչ, համարենք, որ կուշտ ենք։ Հիմա ինչպես պառկենք քնելու, որ հարմար լինի։ (Բեմից դուրս լսվում են ձայներ, մեկ կարծես առյուծի մռնչյուն, մեկ էլ բուի կռնչյուն):

ԻԳՈՐ — (Վախեցած) Այս ի՞նչ է…

ՏՈԼՅԱ — Թռչուններ են երևի։

ԻԳՈՐ — Հո առյուծ չի՞։

ՏՈԼՅԱ — Ի՞նչ առյուծ կարող է այստեղ լինել։

ԻԳՈՐ — Կարող է որևէ գազանանոցից է փախել։ Ես կարդացել եմ այդպիսի մի դեպքի մասին։

ՏՈԼՅԱ — Ամեն ինչ էլ կարդացել ես։ Բավական է ինքդ քեզ վախեցնես։

ԻԳՈՐ — Գնանք այստեղից։

ՏՈԼՅԱ — Ո՞ւր։ Բա որ գիշերն ինչ-որ ճահճում խրրվենք ու մնա՞նք։

ԻԳՈՐ — Այն ժամանակ արի բարձրանանք ծառի կատարը և այնտեղ նստենք։

ՏՈԼՅԱ — Որ քնենք և ցած ընկնենք։ Չէ, պառկենք գետնին՝ ոչինչ չի լինի. մի՛ վախենա։

ԻԳՈՐ — Դու հասկանում, ես, որ քնած մարդու հետ ինչ ասես կարելի է անել…

ՏՈԼՅԱ — Ուրեմն ինչ, ճանապարհորդները բոլորովին չե՞ն քնում։

ԻԳՈՐ — Քնում են, միայն հերթով։

ՏՈԼՅԱ — Իսկ եթե ճանապարհորդը մենակ է։ (Իգորը լռում է): Դե լավ, դու քնիր՝ ես կհերթապահեմ։

ԻԳՈՐ — Չէ, չէ, առաջ դու քնիր, ես միևնույն է, հիմա չեմ կարող քնել։

ՏՈԼՅԱ — Լավ, ես առաջինը կպառկեմ. իսկ դու երբ քնել ուզենաս, ինձ արթնացրու, միայն լավ թափ տուր. ես խորն եմ քնում։ (Պառկում է ծառի տակ: Նորից բուի կռնչոց է լսվում: Թփերի հետևից խորհրդավոր կրակներ են առկայծում: Իգորը վախեցած հրում է Տոլյային):

ՎԱՐԱԳՈՒՅՐ

ԵՐՐՈՐԴ ՊԱՏԿԵՐ

Անտառի եզր: Առավոտ է: Գալիս են Տոլյան և Իգորը: Իգորի մի ոտքը բոբիկ է. կոշիկը ձեռքին է:

ՏՈԼՅԱ — (Ձեռքով ցույց է տալիս դեպի առաջ): Ահա և կամուրջը. իսկ դու կասկածում էիր։

ԻԳՈՐ — Ի՜նչ լավ է այստեղ. ամեն ինչ երևում է, և՛ շուրջդ, և՛ հեռուն։ Տանն էլ մոտիկ ենք, գնանք շո՛ւտ։

ՏՈԼՅԱ — Ուզում ես՝ գնա. ես ձուկ եմ որսալու։ Ա՛յ, այնտեղ, ոլորանում, լավ տեղ կա։

ԻԳՈՐ — Դե թող, դու էլ։ Կարծես դիմահար լինես։ Մի՞թե ուտել ու քնել չես ուզում։

ՏՈԼՅԱ — Ուտել ուզում եմ, իսկ քնել բոլորովին. ես լավ քնեցի։

ԻԳՈՐ — Իսկ ես համարյա թե չեմ քնել։ Բը՜ռռռ… ի՜նչ սառն է օդն անտառում, ուղղակի մրսեցի։ Ա՜խ, հիմա կգնամ ու կմտնեմ վերմակի տակ, իսկ դու ուզում ես՝ մնա։

ՏՈԼՅԱ — Մտածիր ինքդ, անհարմար չէ դատարկաձեռն փողոցով անցնելը. մարդիկ կասեն, այս ինչ ձկնորսներ են, որ գետից վերադառնում են առանց ձկան։

ԻԳՈՐ — Իսկ դու կարթը գետն շպրտիր. ոչ ոք էլ չի իմանա։

ՏՈԼՅԱ — (Խիստ): Դու ավելի լավ է գնաս, Իգո՛ր, թե չէ այդ տեսակ առաջարկության համար քեզ մի քանի ջերմ խոսք կասեմ։ Բա՞ն է մտածել…

ԻԳՈՐ — Դե, ինչպես որ ուզում ես։ Ես կգնամ, այնքան ձուկ բռնիր, որ հոգնես։

ՏՈԼՅԱ — Իսկ այն գործը…

ԻԳՈՐ — Ի՞նչ գործ։

ՏՈԼՅԱ — Ինչ է, արդեն մոռացա՞ր։ Մեր հետագա անելիքը։

ԻԳՈՐ — (Մռայլ, ձեռքը թափ տալով): Հետո, հետո կխոսենք։ Ցտեսություն։

ՏՈԼՅԱ — Ցտեսություն։ Կամուրջն անցնելիս, կոշիկդ հագիր, շորերդ էլ մաքրիր, թե չէ այդպես ամոթ է։ (Իգորը գնում է: Գալիս է Պետյան: Ձեռքին խռսափող և պայուսակ: Ուսերին մի մեծ մուշտակ է գցած):

ՊԵՏՅԱ — Բարև, Ուրրաթ։ Քեզ լրե՞ց քո Ռոբինզոնը։ Թե՞ դու ես Ռոբինզոնը, նա Ուրրաթը։ Ես այդպես էլ չջոկեցի։

ՏՈԼՅԱ — Բարև, անտառային գազան։ Իսկ դու ինչո՞ւ այնպես չարեցիր, ինչպես պայմանավորվել էինք։ Այդ ինչ ֆոկուսներ սարքեցիր։

ՊԵՏՅԱ — Ի՞նչ ֆոկուսներ։ Չէ՞ որ դու առաջարկեցիր նրան արկածներով կերակրել։

ՏՈԼՅԱ — Դու նրան վախեցրիր։ Քեզ ասացի միայն գազանի նման մռնչա, իսկ դու ինքդ էլ երևացիր։



*ՊԵՏՅԱ — Չէ՞ որ նա ուզում էր գազանների հանդիպել: Ճիշտ է, մուշտակով ամդահա էի, բայց նրանով լավ քնեցի:*

*ՏՈԼՅԱ — Բոլորովին հարկավոր չէր: Հա, իսկ կրակներն ինչի համար էին:*

*ՊԵՏՅԱ — Հրավառության: Իմ ստեղծագործությունն էր... Ճիշտ ասա, տպավորությունն ուժեղ էր, չէ՞: Ախր Կովկասում, չհետազոտված տեղերում կարող էինք խորհրդավոր կրակների հանդիպել:*

*ՏՈԼՅԱ — Նա հիմա ոչ միայն իր ճանապարհորդությունից կհրաժարվի, այլև մեր արշավից:*

*ՊԵՏՅԱ — Չի հրաժարվի, կհամոզենք: Բայց դու էլ լավ ես հա, էնպես էիր մեջքիս տալիս:*

*ՏՈԼՅԱ — Տեղն էր, մեզ սոված թողեցիր:*

*ՊԵՏՅԱ — Ախր դա էլ արկած էր: Էլ ինչ գազան կարող էր լինել, որ հրաժարվեր այդ տեսակ համեղ բաներից:* (Բացում է պայուսակը): *Հա, մի քիչ բան է մնացել, արի նախաճաշենք:*

*ՏՈԼՅԱ — Այ, դա լավ է: Գայլի նման քաղցած եմ:* (Ախորժակով ուտում են): *Կգա՞ս ինձ հետ ձուկ որսալու:*

*ՊԵՏՅԱ — Կարթ կտա՞ս:*

*ՏՈԼՅԱ — Դա ինչ հարց է, իհարկե կտամ:*

*ՊԵՏՅԱ — Այդ դեպքում համաձայն եմ:*

*ՏՈԼՅԱ — Դե գնանք:* (Վերցնում է կարթը): *Սպասիր... մենք, իհարկե, այս ամբողջ պատմությունը գաղտնի կպահենք, բայց այ սրանք, երեխաները,* (ցույց է տալիս հանդիսասրահը): *Ախր սրանք բոլորը տեսան: Ի՞նչ ես կարծում, չե՞ն մատնի:*

*ՊԵՏՅԱ — Այս երեխաները՝ երբեք: Բայց և այնպես զգուշացնենք:* (Մոտենում է դեպի հանդիսասրահը և խորհրդավոր շշուկով ասում) *Երեխանե՛ր, եթե հանդիպեք Իգորին՝ լռությո՜ւն, պա՞րզ է:*

*ՎԱՐԱԳՈՒՅՐ*

*Թարգմ. Հ. ՂԱՓԼԱՆՅԱՆ*

# ԹՄԲՈՒԿՆ ՈՒ ՇԵՓՈՐԸ

*ԱՐՏԱՇԵՍ ՊՈՂՈՍՅԱՆ*

Լայն ու դատարկ դահլիճի մեջ
Թմբուկը և շեփորն անվերջ
Իրենց անցած օրերն հիշում,
Վշտանում են թանձր փոշում:

— Ա՜խ, ի՜նչ լավ էր ձմռան բուքին,—
Շեփորն ասում է թմբուկին,—
Հանգիստ նստել պահարանում,
Խորհում էինք, վիճակ հանում,
Թե մեզանից ո՞վ ավելի
Հարգրված է ու սիրելի,
Բայց երկուսիս բանտել են, տե՛ս,
Նույնիսկ ամռանն արևակեզ...

Եվ թմբուկն է խոսում՝ դո՛ւմ-դո՛ւմ,
Հետն էլ վշտից դառը խնդում.
— Մեղավորը դու ես շեփո՛ր:
— Ձայնդ կտրիր, ա՛յ հաստափոր.
Ի՞նչ կարող է թմբուկն անել,
Երբ չեն ուզում գործի դնել.

*Նկ. Ա. ՋԻԶԼԻԿՅԱՆԻ*



Հենց լեզվիդ ես դու զոռ տալիս,
Ա՛յ անիրավ երկարավիզ...

Վրա նստան ծղերն անտես.
— Թմբո՛ւկ,— ասին,— պինդ պահիր քեզ...
Ու ցնցըվեց թմբուկն ահից.
Նրա տափակ ու լայն փորից
Փոշին ելավ մինչ առաստաղ,
Ու դահլիճը պատեց դանդաղ:
Խոխռում է շեփորն ահա.
— Վա՜յ, խեղդվեցի՜, խը՛, խը՛, խի՛, խա՛...
Վախենալով մեղավորից
Ճարդ կտրած պատժում ես ի՞նձ...
Երբ որ այս վենը լռչացավ,
Ամբողջ ջոկատն իրար անցավ,
Շտապելով ներս թափվեցին,
Նրանց իսկույն ազատեցին.
Մեկը խեղդվող շեփորն առավ
Եվ կոկորդը մաքրեց մի լավ,
Մեկը տարավ թմբուկն ահա,
Դրեց դուրսը, որ չորանա,



Մուսաներն էլ ասին իրար.
— Ջա՜ն, գնում ենք դեպի ճամբար...

# „ԱԶԱՏՎԱԾԸ“

Է. ՅԱՎՐՈՒՄՅԱՆ

Նկ. Ա. ՁԱՔԱՐՅԱՆԻ

*Սուրիկը Ծաղկաձոր էր եկել առաջին անգամ. սովորաբար նա իր արձակուրդն անց էր կացնում գյուղում, տատի մոտ:*

*— Օհո՜, այստեղ շատ լավ է,— մտածեց Սուրիկը:*

*Պիոներական սենյակի մոտ նա տեսավ մի մեծ, փայտե ցուցատախտակ: Նրա վրա փակցրած էր մի պլակատ՝ շեփորահար պիոների նկարով: Շեփորի բերանից դուրս էին թռչում խոշոր կարմիր տառեր, կազմելով «Օրվա ռեժիմ» բառերը: Նրանից ցած, ավելի փոքր տառերով գրված էր, թե ո՞ր ժամին է լինում վերկացը, լիցքը, նախաճաշը, ճաշը...*

*— Այ, քեզ բա՜ն. պարզվում է, որ այստեղ էլ ռեժիմ կա,— հիասթափված փնթփնթաց Սուրիկը:*

*Առավոտյան հենց նոր էր շեփորն ազդարարել զարթոնքը, երբ երեխաները վեր թռան մահճակալներից և վազեցին լիցքային վարժությունների: Միայն Սուրիկը մնաց անկողնում:*

*— Դո՞ւ ինչու չես վեր կենում,— հարցրին նրան լիցքից եկած տղաները:*

*— Ես քնել եմ ուզում, մի՛ խանգարեք,— բացագանչեց Սուրիկը:*

*Ննջարան եկավ ջոկատավար Շահենը:*

*— Սուրիկը չի վեր կենում,— դիմեցին նրան պիոներները:*

*— Ինչո՞ւ,— հարցրեց ջոկատավարը:*

*— Ըհը՜,— վերմակի տակ մրթմրթաց Սուրիկը.— դպրոցում ռեժիմ, ճամբարում ռեժիմ... իսկ ես գուցե եկել եմ հենց ռեժիմից հանգստանալու համար, գուցե ես ուզում եմ մի քան կիլո ավելանալ...*

*— Լավ,— փոքր ինչ մտածելուց հետո ասաց Շահենը.— տղանե՛ր, ձեռք մի՛ տվեք նրան: Ես կխոսեմ ավագ ջոկատավարի հետ, որ քեզ, Մովսիսյա՛ն, ազատեն ռեժիմից: Առողջացիր, չաղացիր:*

*Եվ ջոկատավարը երեխաների հետ գնաց նախաճաշելու:*

*Երբ Սուրիկը վեր կացավ ու գնաց ճաշարան, այնտեղ ոչ ոք չկար:*

*— Ինչո՞ւ ես ուշացել. չլինի թե՞ հիվանդ ես,— անհանգստացած հարցրեց խոհարարուհին:*

*— Չէ, Հոփիփի՛կ մորաքույր, նա ազատ*

ված է,— ասաց հերթապահ օղակավար Նազիկ Կարապետյանը և ծիծաղեց։— Նրան շատ շիլա տվեք, որ չաղանա. թե չէ, ո՞վ գիտի, կնիհարի։

— Նազի՛կ, չգիտե՞ս՝ ի՞նչ է անում հիմա մեր ջոկատը,— հարցրեց Սուրիկը, երբ աղջիկը նրա առաջ դրեց շիլայով լիքը ափսեն։

— Տղաները գնացել են հերբարիումի համար ծաղիկներ հավաքելու։

Ամբողջ օրը Սուրիկը լրիվ ազատ էր։ Ճիշտ է, չի կարելի ասել, որ նա դրանից մեծ բավականություն ստացավ։ «Մեռյալ ժամին» նա ուզեց շախմատ խաղալ. բայց որովհետև ճամբարային բոլոր շախմատիստները հանգստանում էին, Սուրիկն սկսեց ինքն իր հետ խաղալ։ Նա իր «կարծեցյալ» հակառակորդից իրար հետևից տարավ ութ խաղ, բայց հաղթանակները չգոհացրին նրան։

Երբ բոլոր երեխաները վեր կացան, Սուրիկն ուզեց պառկել ու հանգստանալ։ Արթնանալով, նա իմացավ, որ հենց նոր վերջացել էր «Չուկը և Գեկը» կինո նկարի ցուցադրումը։ Ամեն ինչ մի տեսակ վատ էր դասավորվում...

Հաջորդ օրերը Սուրիկին նոր դառնություններ բերեցին։ Առավոտները զարթոնքի ազդանշանից հետո, նրա քունը չէր տանում. բայց նա դիտմամբ գլուխը կոխում էր վերմակի տակ և տոթից խեղդվելով, չափազանց բարձր խռմփացնում. իսկ տղաները պտըտվում էին նրա շուրջը թաթերի վրա և շշնջում միմյանց.

— Սո՛ւս, «ազատվածին» կարթնացնե՞ս. նա պիտի կազդուրվի։

Մի անգամ Նորիկ Աբրահամյանն ասաց Սուրիկին.

— Վաղը մենք երկօրյա արշավի ենք գընում, կգա՞ս մեզ հետ։ Ասենք դա քեզ համար պարտադիր չէ. չէ՞ որ դու կարող ես վարվել այնպես, ինչպես ուզում ես։

— Այո, չեմ ուզենա՝ չեմ գա,— պատասխանեց Սուրիկը։

Եվ չգնաց։ Այդ երկու օրը, մինչ երեխաները արշավի էին, Սուրիկը չգիտեր ինչո՞վ զբաղվի։

Ճամբարում գտնվելու հինգերորդ օրը երեխաները գնացին կշռվելու։ Պարզվեց, որ Շահենը ավելացել է չորս հարյուր գրամ,



...միայն Սուրիկն էր, որ չէր չաղացել։

Նորիկ Աբրահամյանը երկու հարյուր հիսուն գրամ։ Ավելացել էին նաև մյուս երեխաները, և միայն Սուրիկն էր, որ չէր չաղացել։

— Ինչո՞ւ է այսպես եղել,— վիրավորված հարցրեց Սուրիկը բժշկին.— ես լավ ուտում եմ, շատ քնում ու զբոսնում...

— Սնունդը, քունն ու զբոսանքը,— պատասխանեց բժիշկը ակնոցը ճակատին բարձրացնելով,— դրանք այն ժամանակ են օգուտ տալիս, երբ ճիշտ են հաջորդում միմյանց. բացի այդ դու ձանձրանում ես, ես նկատել եմ, չէ՞։ Իսկ ձանձրացող մարդիկ չեն կազդուրվում։

Սուրիկը ոչինչ չպատասխանեց և դուրս եկավ սենյակից. իսկ երկրորդ նախաճաշից հետո նա մոտեցավ ջոկատավարին և խնդրեց.

— Շահե՛ն, ազատիր ինձ։

— Ինչպե՞ս, Նորի՞կ,— զարմացավ Շահենը.— ախր ես քեզ մի անգամ ազատել եմ...

— Ոչ, ազատեցեք... ազատվածությունից,— ասաց Սուրիկը։

— Լավ, համաձայնեց ջոկատավարը և դառնալով ննջարանի կողմը հրամայեց.

— Ջոկա՛տ, սպորտային պարապմունքի շարվի՛ր...

Սուրիկն առաջինը շարքի կանգնեց։

# Արագածի գագաթին

Ա. ԱՃԱՆԴՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

— Դրուժինա, շարվի՛ր,— առավոտյան լռության մեջ լսվեց ջոկատավարի ձայնը։

— Ընկե՛ր պետ, դրուժինան պատրաստ է արշավի,— զեկուցեց նա։

Արշավախմբի պետը մոտեցավ շարքին և ստուգեց բոլորի հանդերձանքը։

— Էդիկ, կարո՞ղ ես մեզ հետ ուրով Արագածի գագաթը բարձրանալ,— դիմեց նա շարքի վերջում կանգնած ամենափոքր պիոներին։

— Այո, կարող եմ,— պատասխանեց Էդիկը և ուղղեց մեջքին կապած ճանապարհորդական պայուսակը։

Ստուգումն ավարտված էր։

— Քայլով մա՛րշ,— լսվեց հրամանը, և պիոներները շարժվեցին առաջ։ Նրանք շարքի առաջից տանում էին զեփյուռից փողփողացող ալ դրոշը։

Արևը նոր էր ոսկեզօծել Արագածի ձյունապատ կատարը, երբ պիոներները հասան «Դալի չայի» հովտին։ Այնտեղից նրանք բռնեցին լեռան գագաթը տանող ճանապարհը։ Քայլում էին գետի աջ ափով, ուսումնասիրելով շրջապատը։

— Ի՞նչ արագ է հոսում գետը, ասաց Լաուրան ու գետնից մի քար վերցնելով գցեց գետի փրփրաբաշ ալիքների մեջ։

— Այո, լեռնային գետերը միշտ արագահոս են լինում. այս գետի վրա կարելի է էլեկտրակայան կառուցել,— խոսակցությանը խառնվեց Նշանը։

— Սպասեցեք. ընկե՛ր Պետրոսյան, այստեղ աղբյուր կա,— նայելով ճանապարհային նշանին ասաց հետախույզ Աշոտը ջոկատավարին։

— Վա՛յ, աղբյուրը թաքնված է կանաչների ու ծաղիկների մեջ,—բացագանչեց Համիկը։

Պիոներներն աղբյուրի ջրից խմեցին, լվացվեցին ու առաջ անցան։

— Մի այս կողմը նայեցեք, տեսեք ինչ է կատարվել,— ցույց տալով ժայռից պոկված մի կտոր, խոսեց Համիկը։— Հողմահարվել ու քայքայվել է անձրևների ու քամիների ազդեցությունից։ Որոշ ժամանակից հետո լեռան այս կտորը ավազի մանրիկ հատիկներ կդառնա։

Պիոներներն ուշադրությամբ զննեցին հողմահարված քարի կտորը, նրանից նմուշ վերցրին և շարունակեցին ճանապարհը։

— Ձյո՜ւն, ձյո՜ւն,— հասնելով մի բարձր բլրի,— գոչեց մեկը։

— Զարմանալու ոչինչ չկա, մենք ծովի մակերևույթից շատ բարձր ենք,— նայելով քարտեզին ասաց Աշոտը.— այստեղ ձյուն էլ կլինի, սառույց էլ։

Կեսօրին պիոներները անցել էին բազմաթիվ բարձր բլուրներ ու ժայռեր։

— Այստեղ պետք է հանգստանալ,— ցույց տալով մի կանաչ, հարթ տարածություն, ասաց արշավի պետը։

Պիոներները նստեցին աղբյուրի մոտ։

Արշավի մասնակիցները ախորժակով ճաշեցին, ապա մի քանիսը պառկեցին թավիշ կանաչին հանգստանալու։ Աղջիկները շուրջպար բռնեցին։

— Վերջին աղբյուրն է, վերևում աղբյուր չկա, ով ուզում է թող ջուր վերցնի,— շարժվելուց առաջ քարտեզին նայելով ասաց Աշոտը։

Պիոներները ջուր վերցրին, ու երկար շարքը նորից ձգվեց դեպի վեր։ Սկսվեց ճանապարհի դժվարին մասը։ Փխրուն, ավազախառն հողը սահում էր պիոներների ոտքերի տակից։

— Զգույշ քայլեք, ներքևում անդունդ է,— ասում էր արշավի պետը։

Պիոներները գործի դրեցին ձեռնափայտերը։

— Ինչո՞ւ չուստերիդ խոտ չես փաթաթել, կի՛մա, այդպես դժվար է քայլել,— հարցրեց Էմման:

— Ինձ մոտ վիրակապ կա, վերցրու փաթաթիր,— ասաց Նշանը:

Եվ այսպես, հաղթահարելով դժվարությունը պիոներներն առաջ էին շարժվում: Նրանք սկսեցին քայլել հողով ծածկված ձյան վրայով:

— Ետ մնացողներին պետք է օգնել,— ասաց ջոկատավարը:

Վոլոդյան հանեց երկար պարանը, մի ծայրը կապեց ժայռի քարերից, իսկ մյուս ծայրը գցեց ներքևում սպասող պիոներներին: Պարանի ծայրը տեսնելով նրանք ուրախացան. բռնեցին ու վեր բարձրացան: Սառցապատ բլրի վրա, արշավի պետը դադար տվեց: Պիոներները շրջանաձև նստեցին քարերի վրա:

— Ո՞վ կարող է ասել, ինչո՞ւ մինչև հիմա ձյունը պահպանվել է այս բլրի վրա,— հարցրեց ընկեր Պետրոսյանը:

— Սա Արագածի չորրորդ գագաթն է. մեր անցած բլուրներից ամենաբարձրը: Այստեղ օդը շատ սառն է, իսկ ուժեղ քամիները ձյունը ծածկել են ավազի հաստ շերտով: Դրա համար էլ արևի ճառագայթները ձյունը չեն հալեցրել,— ասաց Էդիկը:

— Ճիշտ է, դրա համար էլ ասում են Արագածը ծածկված է հավերժական ձյունով,— մեջ մտավ Լաուրան:

Հանգստանալուց հետո նրանք շարժվեցին առաջ: Մի քանի բլուր անցնելուց հետո նրանց առաջ բացվեց մի գեղեցիկ տեսարան: Բլուրների մեջ մեղմ զեփյուռից ծփում էր կապուտաչյա լճակը:

— «Խարագյոլը»— գոչեցին բոլորը միաբերան ու վազեցին դեպի այն կողմը:

Արևը թեքվել էր դեպի մայրամուտ: Արագածից փչող սառը քամին քանի գնում ուժեղանում էր: Լճակի ափին դադար տրվեց: Աղջիկները սեղանի պատրաստություն էին տեսնում: Տղաները հավաքած մացառներով խարույկ վառեցին՝ թեյ եփելու համար:

Ցուրտը զգացնել էր տալիս իրեն: Ճաշից հետո պիոներները հագան տաք հագուստներ ու շարունակեցին ճանապարհը:

— Բաց երկնքի տակ գիշերել հնարավոր չէ, պետք է վրաններ պատրաստել,— ասաց ջոկատավարը:

— Այո, վրաններ պատրաստենք:

Նրանք գործի անցան: Միքանի ձեռնափայտ պարանով իրար կապեցին, ապա փայտերի մյուս ծայրերը խրեցին ավազի մեջ. վրանի կմախքն արդեն պատրաստ էր:

— Աղջիկնե՛ր, ձեր ադյալները տվեք,— ասաց Վոլոդյան:

Ադյալները փռեցին գետնին ամրացված փայտերին: Վրանը պատրաստ էր:

— Սա աղջիկների վրանն է: Աղջիկնե՛ր, եկեք հանգստացեք,— ասաց ջոկատավարը:

Արշավի պետն ու ջոկատավարը հիանում էին Վոլոդյայի շինարարական աշխատանքով և լուռ օգնում նրան՝ տղաների համար էլ վրաններ պատրաստելու:

Պիոներների վրաններից երևում էին հեռվում առկայծող լույսերը: Դա կոլտնտեսությունների ֆերմաներում աշխատողների վրանների լույսերն էին:

— Մեր լապտերներն էլ վառեք, թող



Պարանը բռնելով վեր բարձրացան:

անասնապահներն էլ մեզ տեսնեն,— ասաց Համիկը:

*Գիշերվա խավարում դեռ երկար ժամանակ չէր լռում պիոներների երգն ու ծիծաղը։*

⁂

*Վաղ առավոտյան պիոներներն արթնացան, հագնվեցին։ Ապա միաշար շղթան թանձր մառախուղի միջով նորից ձգվեց դեպի վեր։*

*— Քիչ է մնացել մինչև գագաթը,— ընկերներին հույս էր տալիս Վոլոդյան ու քամուց ալիքվող դրոշակը բռնած բարձրանում էր վեր ու վեր։ Նրան հետևում էին Նշանը, Լաուրան, Կիման։*

*Ժամը մի անգամ դադար էր տրվում։ Երրորդ դադարին, երբ նոսրացավ մառախուղը, պիոներները նայեցին առաջ ու հեռվում տեսան Ապարանի շրջանի գյուղերը։ Երևում էր նաև Երևանը, իսկ վեր բարձրանալուց հետո, հեռու մշուշի միջից երևաց Սևանը։*

*— Սևա՜նը, Սևանա լի՜ճը,— բացագանչեցին բոլորը միաբերան։*

*Ճանապարհորդներն ավելի աշխուժացան ու շարունակեցին վերելքը։*

*Առավոտը, ուղիղ ժամը տասին, բոլոր պիոներներն էլ լեռան գագաթին էին։ Վոլոդյան ու Նշանը կանգնած էին գագաթի ամենասուր ծայրին, ուր իրենցից առաջ եղած ալպինիստները դրել էին Լենինի և Ստալինի կիսանդրիները։*

*— Նշա՛ն, քեզանից աջ՝ քարի տակ շիշ կա դրված, որի մեջ նամակ կա, շիշը հանիր,— նայելով տեղագրական քարտեզին ասաց Աշոտը։*

*Նշանը հանեց շշի մեջ եղած թուղթը և կարդաց այն ալպինիստների անունները, որոնք ձմռանը բարձրացել էին Արագածի գագաթը։*

*— Մենք էլ մեր անունները գրենք,— ասաց Լաուրան։*

*Արշավի պետը գրեց բոլոր պիոներների անունները, դրեց նույն շշի մեջ, փակեց շշի բերանը և դրեց տեղը։*

*Պիոներները մի ժամ մնացին Արագածի գագաթին, ապա սկսեցին վայրէջքը։ Իջնելն ավելի հեշտ էր։ Վերադարձին նրանք հավաքեցին բազմատեսակ ծաղիկներ, դեղաբույսեր, քարեր, հարազատ դպրոցին նվեր տանելու համար։*

*Ցերեկվա ժամը երկուսին արշավի մասնակիցները եղան Քուչակ գյուղի ամառանոցում աշխատող կոլտնտեսականների մոտ և նրանց համար համերգ տվեցին։ Երբ պիոներների արշավախումբը հասավ Ապարան, արդեն մութն էր։ Վառվել էին էլեկտրական լույսերը։*

*Պատանի ճանապարհորդները Լուսագյուղի հավաքական դրուժինայի երրորդ ջոկատի պիոներներն էին։*




ՀՄ. ՍԻՐԱՍ

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

Գուրգենը նախաճաշեց ու անմիջապես գնաց ստորերկրյա հիդրոկայանի գրասենյակը: Քիչ հետո եկավ ինժեներ Արեգը և ուրախ ժպիտով դիմավորեց Գուրգենին: Նա բռնելով վերջինիս թևից ասաց.

— Դե՛, հիմա ի՞նչ ճամփով կուզես իջնել ծովի հատակը:

— Ծովի հատա՞կը,— շփոթվեց Գուրգենը:

— Մի՛ վախենա, չես խեղդվի. հսկայական ծորակ կա այնտեղ... հետո ջուրը հոսում է խողովակների մեջ... չե՞ս տեսել հիդրոկայանի խողովակները. դրանք էլ շատ լայն են. դե, ասա, ո՞ր ճամփով իջնենք:

— Որը որ հարմար ես գտնում,— ասաց Գուրգենը:

— Դե լավ, իջնենք լիֆտով:

Աշտարակի ներքևը բացվող դարբասով Արեգը ներս մտավ. նրա հետևից՝ Գուրգենը: Արեգը բացեց լիֆտի դուռը և Գուրգենին ներս հրեց: Քիչ հետո համաչափ հնդյունով լիֆտն սկսեց իջնել ներքև:

Լիֆտի կողքերին կային երկարե աստի-

նաններ, որոնցից կարելի էր որոշել, թե քանի հարկ են ներքև իջել:

— Կարծեմ արդեն տասը հարկի չափ իջանք,— ասաց Գուրգենը:

— Այո, չես սխալվում:

— Եվ դեռ էլի իջնելո՞ւ ենք:

— Այո:

Մի քանի հարկ ներքև Գուրգենը արտասովոր հոնդյուն լսեց: Սկզբում նա դժվարանում էր որոշել մեքենաների շրի՞նդ է այդ, հեղեղի աղմո՞ւկ, թե՞ բազմաթիվ մարդկանց ձայներ:

Լիֆտը կանգնեց: Արեգն շտապ դուրս եկավ լիֆտից և այնտեղ աշխատող բանվորի ականջին մի բան փսփսաց, ապա շուռ եկավ ու բռնեց Գուրգենի ձեռքը.

— Գնանք:

Նրանք մի քիչ թեքվեցին ու մտան մի խցիկ, որտեղ Արեգի խորհրդով բանվորը հանգցրել էր լույսը:

— Այս ո՞ւր ընկանք,— անհանգստացավ Գուրգենը, ոչինչ չեմ տեսնում:

— Մութ աշխարհ,— ասաց Արեգը:

— Արե՛գ, կատա՞կ ես անում, ի՞նչ է:

Արեգը սրտանց ծիծաղեց ու գոչեց.



...հոնդյունով աշխատում էր մի հսկայական մեքենա:

— Մե՛կ, երկո՛ւ, երե՛ք... հիմա հրաշք կլինի:

Արեգը բացեց խցիկի դուռը և Գուրգենին առաջ մղեց:

Գուրգենը մտավ պայծառ լույսերով ողողված բարձր առաստաղով մի լայն դահլիճ, որի մեջտեղը հոնդյունով աշխատում էր մի հսկայական մեքենա: Քիչ հեռու դարձյալ մեքենաներ էին շարված: Այնտեղ՝ խորքում մի ընդարձակ դուռ կար:

— Այս որտե՞ղ ենք,— հարցրեց Գուրգենը,— վերև՞ բարձրացանք, չիմացա:

— Ոչ, ավելի ներքև իջանք,— պատասխանեց Արեգը,— խորը, խորը, գետնի տակ....

Գուրգենը զարմացած նայում էր չորս կողմը: Ինչպե՞ս են փորել այսքան մեծ տարածություն, ինչպե՞ս են այս ահռելի մեքենաները իջեցրել գետնի տակ:

Արեգը հանգիստ բացատրում էր:

— Մեր սովետական հզոր տեխնիկան ընդունակ է ամեն տեսակ հրաշք կատարել: Մոսկվայի մետրոյի վարպետներն էլ մեզ օգնեցին գլուխ բերելու այս բարդ աշխատանքը: Հազարավոր խորանարդ մետրերով հող ու խիճ ենք դուրս մղել այս փոսից, պատերը ցեմենտով ամրացրել և ապա, հատուկ սարքավորումով, ցած ենք իջեցրել այս հսկա խողովակները: Այժմ հարյուր քսան մետր խորությունից մենք լույս և ուժ ենք տալիս երկրին:

— Իսկական հրաշք է,— ոգևորվեց Գուրգենը:

Քիչ հետո նրանք անցան մյուս բաժանմունքը: Նրանց առաջ բացվեց մի մեծ ավազան, ուր լցվում էր ջուրը, որը հսկա խողովակների միջով թափվելով Սևանի «ծորակից» աշխատեցնում էր հիդրոկայանը: Այս ավազանով դիմացի թունելից հոսում էր ներքև, դեպի Հրազդանի հունը:

Գուրգենը նայում էր ավազանի ջրերին, որոնք ահեղ հորձանքով պտտվում էին և մղվում դեպի Հրազդանը: Երևում էր, որ Գուրգենն ավելին էր ուզում իմանալ. իսկ Արեգը տարվել էր հուշերով:

— Երբ ես դեռ երրորդ դասարանում էի,— սկսեց Արեգը,— շատ էի սիրում մաթեմատիկան, բայց հեքիաթներ էլ էի սիրում. և ահա, մի օր, մեր գյուղի դպրոցի ուսուցչուհի Նազիկը մեզ տարավ էքսկուրսիայի մոտիկ անտառը և պատմեց Արեգի պատմությունը... դու էլ երևի լսած կլինես... թե ոնց է Արեգը գնում Հազարան բլբուլին գտնելու: Արեգը շատ դժվարություններից հետո մութ աշխարհի հրեշի ճիրաններից ազատվում է և երջանկացնում հայրենի աշխարհը:

Արեգը հեքիաթն ավարտելուց հետո ավելացրեց.

— Մեր պապերն ու պապի պապերը, ապրել են շատ վատ կյանքով, գյուղերը ջուր չեն ունեցել, լույս չեն ունեցել, հարուստ բռնակալները հրեշի նման նրանց զրկել են ամեն բանից, և նրանք երազել են ազատ լուսավոր կյանք, լույս, ջուր...

Քիչ հետո նրանք մոտեցան մի սրահակի, որտեղից աստիճաններ էին բարձրանում: Գուրգենը նայեց դեպի վեր, բայց ծայրը անհնար էր տեսնել:

— Այս ի՞նչ աստիճաններ են,— հարցրեց նա:

— Սա այն ճամփան է, որտեղից կարելի է դուրս գալ... թե՞ կհոգնես... գնանք նորից դեպի լիֆտը:

— Ո՛չ,— վրա բերեց Գուրգենը:

Ու նրանք սկսեցին բարձրանալ աստիճաններով. ամեն fսան աստիճանի վրա գեղեցիկ լուսամփոփներով էլեկտրական լամպեր կային: Քիչ հետո ընկերներն արդեն կանգնած էին Սևանի ափին: Շնկշնկում էր մեղմ հովը, և հանդարտ ծփում էին կապույտ ջրերի ալիքները:

# ԳԱՅԼԵՐԻ ՀԵՏԵՎԻՑ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

*Տայգան այնպես էր մթնել, այնպես էր հեկեկում ու ոռնում գազազած մրրիկը, որ երկար ժամանակ մենք չգիտեինք, թե ինչպիսի՞ սարսափելի վտանգ էր մեզ սպասում: Բայց Տատոն միշտ էլ հավատարիմ իր սովորությանը ծխամորճը բերանից վայր չբերեց: Մրրիկը մինչև ուշ գիշեր չդադարեց: Ցուրտը դողում էր տերևի նման: Ձյան քուլաները ներս էին խուժում յուրտի բոլոր անցքերից: Շուտով մենք նման էինք տարբեր մեծության ձմեռ պապիկների, որոնցից մեկը՝ հանգիստ ծխում էր: Փոքրիկ Օլչանը՝ Տատոյի որդին թաղվել էր ձյան մեջ ու չէր երևում:*

*Տատոն զգաց ահավոր վտանգը: Նա որ մինչև այդ հանգիստ նստած, չէր շարժվում տեղից, ծխամորճը հանեց բերանից ու զգաստացավ: Հանկարծ լսվեց ուղեցույց շան, Ալայի տարօրինակ կլանչոցը:*

*— Գայլե՜ր,— շշնջաց Տատոն:*

*Նա վեր կացավ տեղից: Հանկարծ ինչ-որ բան հիշեց, յուրտի մի անկյունից, ձյան տակից դուրս քաշեց մի տարօրինակ առարկա, և դուրս նետվեց մոլեգնած փոթորկի գիրկը: Ալայի կլանչը ոռնոցի փոխվեց: Կես ժամ անցավ: Տատոն դեռ չէր վերադարձել: Ի՞նչ պատահեց նրան:*

*Ոռնում էր բուքը, ոռնում էր ծեր Ալայը: Ոռնոցները թանձրացան և ուժեղացան:*

*— Գայլե՜ր,— շշնջացի ես: Հանկարծ մի աղիողորմ ճիչ լսվեց. հետո նա փոխվեց ողբի: Կարծես թե ծվատում, խեղդում էին մեկին: Ես շարժվեցի դեպի Օլչանը. բայց նա իր տեղում չէր: Երբ ուշքի եկա, շարժվեցի*



— Ապրես, տղա՛ս, ապրես:

դեպի դուռը: Այդ պահին շատկերիկի մորթին ետ ընկավ դռնից և ես տեսա Տատոյի դեմքը: Նա մուշտակի թևով սրբեց երեսն ու հանգիստ ժպտաց: Այդ ժպիտն արևի նման ջերմացրեց ինձ:

— Գայլերը շատ են,— խոսեց Տատոն,— սոված են, շա՜տ են սոված...

— Օլչա՜նը, համարյա թե գոռացի ես,— Օլչանը չկա:

— Լսո՞ւմ ես Օլչանի ձայնը, ոնց է վրնգվրնգում,— պատասխանեց Տատոն:

— Օլչա՞նը:

— Այո, նստիր ու մի՛ անհանգստանա:

Նա բռնեց թևս, ինքը նստեց ու ինձ էլ նստեցրեց իր կողքին, մուշտակը ետ գցեց ու սկսեց ծխամորճը լցնել: Տատոն նորից նման էր ինքն իրեն, հանգիստ, անխռով ու դանդաղաշարժ:

Լուսաբացին փոթորիկը լռեց: Տայգայում խոր ու հանդիսավոր լռություն տիրեց:

— Փոթորկից հետո՝ խաղաղություն,— ասաց Տատոն և վեր կացավ տեղից:

Մենք դուրս եկանք: Տայգայի տեսքը փոխված էր: Ձյան ահագին բլրակներ ու թմբեր էին առաջացել այնտեղ, որտեղ դեռ երեկոյան հարթ սարալանջ էր: Բազմաթիվ ծառեր էին ընկել: Շատերն էլ թեքվել էին ու այդպես կռացած մնացել: Տատոն աչքերը կկոցելով նայեց իր շուրջը, ապա շուռ եկավ ու քայլերն ուղղեց դեպի կեչիների պուրակը: Ես հետևեցի նրան: «Ի՞նչ եղավ Օլչանը,— մտածում էի ես, ո՞ւր են շները»...

Տատոն կեչիների պուրակի վերջում կանգ առավ ու ինձ ձեռքով արեց. ես մոտեցա և շատ զարմացա: Հողմի կուտակած ձյան շերտերից մի ահագին բլրակ էր առաջացել: Բլրակն ինչ-որ անցք ուներ, իսկ անցքից բարակ կապտավուն գոլորշի էր դուրս գալիս: Տատոն նայեց գոլորշուն, նայեց ինձ ու քնքուշ հայրական ձայնով ասաց.

— Օլչա՛ն, իմ խելոք բալես:

Նա դեն գցեց վրայի մուշտակն ու սկսեց քանդել բլրակը: Ես նույնպես գործի անցա: Մենք դեն էինք շպրտում ձյան շերտերը: Քիչ հետո ես նկատեցի Օլչանի ոտները, որոնք դուրս ցցվեցին ձյան տակից: Տատոն արջի նման վրա պրծավ, ձեռքերը խրեց ձյան մեջ, գրկեց Օլչանի մարմինը, դուրս քաշեց ու թափահարեց օդում: Մի վայրկյան ես չհասկացա, թե ինչ է կատարվում. բայց ինձ սթափեցրեց Տատոյի զիլ ձայնը.

— Ապրես, տղա՛ս, ապրես:

Ապա նա գլխից վեր բարձրացրեց որդուն ու ձեռքերը բաց թողեց: Օլչանն ընկավ ձյան վրա և հանկարծ կատվի ճկունությամբ վեր կացավ տեղից ու վազեց իմ կողմը: Ես գրկեցի նրան ու ամուր, շատ ամուր սեղմեցի կրծքիս: Այդ պահին Տատոն ձյան տակից դուրս քաշեց մի ահագին բևեռային գայլ:

Ահա թե ինչ էր տեղի ունեցել երեկ:

Օլչանը ձյունախառն բքի ժամանակ դուրս եկավ տնից և թակարդը ձեռքին ուղղվեց դեպի կեչիների պուրակը: Կատաղի մրրիկն ամեն կողմից ծեծում էր նրան: Պատանին ոտքերի վրա կանգնել չէր կարողանում: Նա սողում էր, ընկնում, նորից բարձրանում, փորձված ու խելացի Ալայը առաջնորդում էր նրան իր կարճ ու հատու հաչոցներով: Գայլերի ոհմակը մոտենում էր: Նրանց աչքերը փայլում էին կրակների նման: Եվ ահա՝ մի զույգ կրակ առանձնացավ ոհմակից, գնալով մեծացավ ու պայծառացավ: Օլչանը կանգ առավ: Նրա մանկական սիրտն սկսեց տրոփել. ինչ-որ անզսպելի դող համակեց նրան: Բայց դա երկար չտևեց: Արյունարբու գազա-



...բարձրացրեց ձեռքի մահակը...

նը մի ահարկու թռիչքով ցատկեց Օլչանի վրա։ Օլչանը դեմ տվեց թակարդը։ Գազանը սոսկալի ճիչ արձակեց։ Նրա առաջին թաթերից մեկն ընկավ թակարդը։ Պատանին ետ քաշվեց, բարձրացրեց ձեռքի մահակն ու սկսեց ծեծել թակարդն ընկած գազանին։ Գայլի կանչը փոխվեց լացի ու ողբի։ Նա կարծես իր ճիչերով զգուշացնում էր ոհմակին։ Ոհմակը լսեց իր առաջնորդի ձայնը և մի պահ կանգ առավ։ Այդ պահին Ալայն առաջ վազեց, պտտվեց քաղցած գայլերի առաջ, գրավեց նրանց ուշադրությունը իր վրա և վազեց յուրտի հակառակ ուղղությամբ՝ դեպի կիրճը։ Քաղցած ոհմակը սլացավ Ալայի հետևից։ Խելոք կենդանին նրանց հեռացրեց տիրոջ բնակատեղից։

— Եթե այդպես չանեինք, գայլերը մեզ էլ, շներին էլ կլափեին,— բացատրեց Տատոն.— քաղցած գայլերից մեզ ազատեց գայլերի առաջնորդը՝ իր ողբալի լացով։ Տես ի՞նչ խոշորն է։

Նա նորից բարձրացրեց գայլին, ուշադրությամբ նայեց նրա բաց մնացած երախին, նայեց որդուն ու ասաց.

— Վաղը կգնաս Օեմիկոն կոմսոմոլի մեջ մտնելու։

Երբ Օլչանը բարձրացրեց գլուխը, աչքերը թաց էին։ Հոր և որդու հայացքները հանդիպեցին։ Մի պահ նրանք անթարթ աչքերով նայում էին իրար. «Հիմա երևի կգրկախառնվեն», մտածեցի ես։ Բայց Տատոն մռայլվեց, երեսը շուռ տվեց որդուց ու խիստ ձայնով ասաց.

— Իսկ հիմա գտիր Ալային։

Մյուս օրը Օլչանը մեզ հրաժեշտ տվեց։ Սահնակը շարժվեց դեպի արևմուտք։ Ալայը լծաշարքում չկար, նրա տեղը զբաղեցրել էր Մորժոտ անունով մի ուրիշ շուն։

---

# Մի արտի մասին



(Աֆրիկական հեքիաթ)

Մի օր Նապաստակն ինքն իրեն ասաց.

— Ի՞նչ լավ է կորեկը ձմռան օրերին։ Այստեղ մի արտ կա, որը ես կուզեի մշակել. բայց հողը շատ պինդ է, իսկ իմ թաթիկները այնքան ուժեղ չեն։ Հարկավոր է մի ճար անել։

Նապաստակը շատ խորամանկ էր։ Նա վազելով գնաց հարևան անտառը, որտեղ փիղն էր աշխատում։

— Բարի օր, Փի՛ղ ախպեր, ես պիտի քեզանից մի բան խնդրեմ։

— Բարի օր, Նապաստա՛կ. այդ ի՞նչ խնդիրք է,—հարցրեց Փիղը և ուշադրությամբ նայեց Նապաստակին։

— Կարո՞ղ ես արդյոք ինձ օգնել՝ արտը մշակեմ։ Ես քեզ բերքահավաքի ժամանակ կվճարեմ։

— Ես ցերեկներն զբաղված եմ. բայց կարող եմ աշխատել գիշերները։

— Շնորհակալ եմ,— ասաց Նապաստակը,— ուրեմն կգաս գիշերն աշխատելու, իսկ ես արտը կմշակեմ ցերեկով։ Ինչ վերաբերում է քո վարձին...

— Էհե՜,— ասաց Փիղը,— հավասար աշխատանքի համար հավասար վարձ. բերքի կեսն իմն է։

— Լավ,— ասաց Նապաստակը։— Արտը գտնվում է երեք բաոբաբների մոտ։ Այս երեկո ես քեզ կսպասեմ. մնաս բարով։

Նապաստակը շուտով հասավ մեծ գետի ափը։ Ջրի մեջտեղում նա մի սև մեջք տեսավ։

— Բարի օր, Գետաձի՛ ախպեր,— աղաղակեց Նապաստակը։— Ես պետք է քեզանից մի բան խնդրեմ։

Գետաձին մոտեցավ ափին։ Նապաստակը նրան ասաց.

— Ի՜նչ լավ է կորեկը ձմռան օրերին։ Բայց ես այնքան ուժեղ չեմ, որ կարողանամ մենակ մի ամբողջ արտ մշակել։ Կուզե՞ս ինձ օգնել։ Դու ցերեկը կաշխատես, իսկ ես գիշերը։

— Ես կգերադասեի աշխատել գիշերը. այդ ժամանակ շոգ չէ։

— Անկարելի է։ Գիտես, որ ես ցերեկը քնում եմ և արթնանում միայն երեկոյան։ Իսկ դու քնում ես գիշերը և կարող ես աշխատել ցերեկը։ Ինչ վերաբերում է քո վարձին...

— Է՜հ,— ասաց Գետաձին,— հավասար աշխատանքի համար՝ հավասար վարձ. բերքի կեսն իմն է։

— Լավ,— ասաց Նապաստակը,— կուզե՞ս աշխատանքն անմիջապես սկսել. եկ քեզ ցույց տամ արտը, իսկ հետո կգնամ քնելու։

Երկու բարեկամ գնացին արտը և Գետաձին սկսեց մշակել արտն իր մեծ թաթերով։

— Գործը շատ լավ է գնում,— ասաց Նապաստակը, տեսնելով թե ինչպես է Գետաձին աշխատում։— Շարունակիր, բարեկա՛մս, իսկ ես գնամ ու մի քիչ քնեմ այն ծառի տակ։

Նապաստակը քնեց մինչև երեկո, բայց արտ գնաց փղից մի քանի րոպե առաջ։ Երբ Փիղը եկավ, Նապաստակը նրան ասաց.

— Նայիր, թե ինչպե՜ս եմ աշխատել ցերեկը։— Եվ նա ցույց տվեց Գետաձիու մշակած կտորը։— Ո՜ւֆ, ես շատ եմ հոգնել։ Այժմ քո հերթն է մշակելու։

— Ինչպե՜ս, դո՞ւ ես մշակել այդ ամբողջ կտորը։

— Այո, մի՞թե ես թաթեր չունեմ,— ասաց Նապաստակը։

— Ունես, բայց դու մեծ չես և...

— Մեծ չեմ, բայց ճարպիկ եմ։ Աշխատիր այնպես, ինչպես ես եմ աշխատել։ Բարի գիշեր, գնում եմ քնելու։

Մյուս օրը Գետաձին եկավ արտը։ Նապաստակը սպասում էր։ Եվ երբ նրան տեսավ, հոգնած տեսքով սկսեց շոյել իր թաթերը։

— Ինչպե՜ս, դո՞ւ ես մշակել այդ ամբողջ կտորը,— հարցրեց Գետաձին։

— Դե, իհարկե՜։

Մի շաբաթ շարունակ Գետաձին ցերեկն էր արտում աշխատում, իսկ Փիղը՝ գիշերը, բայց նրանք երբեք իրար չէին հանդիպում։ Նապաստակը միշտ գալիս էր ժամանակին՝ մեկին ճանապարհ դնելու և մյուսին ընդունելու համար։ Վերջապես արտը մշակված էր։ Փիղը վերադարձավ իր անտառը, իսկ Գետաձին իր գետը։ Վերջապես կորեկը հասունացավ։ Փիղն առաջինը եկավ Նապաստակի մոտ ու ասաց նրան.

— Ե՞րբ ենք բերքը հավաքելու։

— Սիրելի՜ս,— պատասխանեց Նապաստակը,— այս տարի կորեկի բերքը շատ վատ է։ Եթե բաժանենք, մեզանից ամեն մեկը շատ քիչ կորեկ կստանա...

— Ինչպե՜ս,— բացականչեց Փիղը։

— Տեսնո՞ւմ ես, սիրելի՛ս, դու աշխատել ես ընդամենը մի շաբաթ, իսկ քո բաժին կորեկը կուտես մի օր։ Ամբողջ բերքը թող պատկանի նրան, ով կհաղթի «պարանի պայքարում»։

— Ի՞նչ բան է «պարանի պայքարը»։

— Տեսնո՞ւմ ես այս պարանը,— հարցրեց Նապաստակը և Փղին մի շատ երկար պարան ցույց տվեց։— Բռնիր այս պարանի ծայրը, իսկ մյուս ծայրը ես կվերցնեմ ու

կվազեմ դեպի գետը, և երբ ես կճչամ «բատառ», դու կսկսես ձիգ տալ պարանը։ Ես էլ իմ կողմից ձիգ կտամ։ Նա, ով մեզանից ավելի ուժեղ է և իր կողմը կքաշի թույլին, կստանա ամբողջ բերքը։

Փիղը նայեց Նապաստակին ու մտածեց.



Գետաձին նայեց Նապաստակին...

— Իհարկե, ես կհաղթեմ։ Լավ. Դա շատ լավ միտք է։

Նա վերցրեց պարանի մի ծայրը, իսկ Նապաստակը վերցրեց մյուս ծայրն ու վազեց դեպի գետը։ Կանչեց Գետաձիուն։

— Սիրելի՛ Գետաձի, կորեկը հասունացել է,— ասաց նրան։

— Իսկ ե՞րբ պիտի հավաքենք բերքը,— հարցրեց Գետաձին։

— Սիրելի՛ս,— պատասխանեց Նապաստակը,— այս տարի կորեկի բերքը շատ վատ է։ Եթե բերքը բաժանենք, մեզանից ամեն մեկը շատ քիչ կորեկ կստանա։

— Ինչպե՞ս, դու չե՞ս ուզում բերքը բաժանել։ Ոչ, ոչ, հավասար աշխատանքի համար հավասար վարձ։

— Տեսնո՞ւմ ես, սիրելի՛ս, դու աշխատել ես ընդամենը մի շաբաթ, իսկ քո բաժին կորեկը կուտես մի օր։ Ոչ, հարկավոր չէ բերքը բաժանել։ Ահա քեզ ինչ եմ առաջարկում՝ ամբողջ բերքը թող պատկանի նրան, ով կհաղթի «պարանի պայքարում»։

— Ի՞նչ բան է «պարանի պայքարը»։

— Դու սա տեսնո՞ւմ ես,— ասաց Նապաստակը և ցույց տվեց պարանի ծայրը։— Դու կբռնես պարանի այս ծայրը, իսկ ես կբռնեմ մյուս ծայրը, որն այնտեղ է՝ բարքի մոտ, և երբ ես կճչամ «բատառ», դու կսկսես ձիգ տալ պարանը. ես էլ մյուս ծայրը ձիգ կտամ։ Նա, ով մեզանից ավելի ուժեղ է և իր կողմը կքաշի ավելի թույլին, կստանա ամբողջ բերքը։

Գետաձին նայեց Նապաստակին ու մտածեց.

«Իհարկե, ես կհաղթեմ»։— Ապա Նապաստակին պատասխանեց.

— Այդ լավ միտք է։

Նապաստակը պարանի ծայրը տվեց Գետաձիուն, հետո գնաց ու թաքնվեց մի ծառի հետև ու բարձրաձայն աղաղակեց «Բատառ՜»։ Երկու մեծ կենդանի սկսեցին ձիգ տալ պարանն ամբողջ ուժով։ Այն ժամանակ Նապաստակը վազեց արտն ու հավաքեց ամբողջ բերքը։ Պարանի պայքարը շարունակվեց երկու օր ու երկու գիշեր։ Հետո Փիղն ասաց ինքն իրեն.

— Ես շարունակ ձիգ կտամ պարանը, բայց մի քիչ կառաջանամ՝ տեսնեմ, թե նա ինչ է անում։

Գետաձին էլ այդպես մտածեց։ Վերջապես Փիղն ու Գետաձին հանդիպեցին։

— Այդ ի՞նչ ես անում այնտեղ։

— Իսկ դու։

— Ինչո՞ւ ես ձիգ տալիս այդ պարանը։ Ո՞ւր է Նապաստակը։

— Դու իրավունք չունես ձեռք տալու պարանին։ Որտե՞ղ ես թաքցրել Նապաստակին։

— Ե՞ս եմ թաքցրել Նապաստակին։ Նա գտնվում էր պարանի մյուս ծայրին։ «Պարանի պայքարն» էր վճռելու, թե ում պիտի պատկանի կորեկը։

Փիղն ու Գետաձին նայեցին իրար ու հասկացան, որ Նապաստակը նրանց խաբել է։

Ֆրանս. թարգմ. Գ.Ր. ԱՐԵՅԱՆ

# ԻԼՅԱ ԵՖԻՄՈՎԻՉ ՌԵՊԻՆ

Նևայի ափին կանգնած էր մի երիտասարդ և հուզմունքից ու զայրույթից այրվող աչքերով նայում էր ջրերին: Այնտեղ, բեռնած նավի ծանրության տակ տնքալով, գետի հոսանքին հակառակ, առաջ էին գնում մի խումբ մարդիկ. իսկ Նևայի ջրերը դեպի հեռուները էին տանում վշտով, սակայն պայքարի շրնչով լցված նրանց երգը: Տեսարանը ցնցեց երիտասարդին: Նրան թվաց, որ այդ մարդիկ, ինչպես մի ծանր ամպ ծածկեցին արևը: Դա 1868 թվականին էր, Պետերբուրգի շրջակայքում:

Այդ տեսարանը երկար ժամանակ հանգիստ չէր տալիս երիտասարդին: Նա ճանապարհորդեց Վոլգայով, ծանոթացավ բուռլակների հետ և երկու տարի անց ստեղծեց իր նշանավոր «Բուռլակներ» նկարը: Դա մի բողոք էր ցարական բռնակալության դեմ:

Այդ երիտասարդն ապագա աշխարհահռչակ նկարիչ՝ Իլյա Եֆիմովիչ Ռեպինն էր: Ռեպինն իր մանկությունն անց է կացրել Ուկրաինայի Չուգուև քաղաքում: Ապա փայլուն գնահատականներով ավարտել է Պետերբուր-գի Գեղարվեստների ակադեմիան, գործուղվել արտասահման և ուսումնասիրել համաշխարհային լավագույն վարպետների ստեղծագործությունները: Սակայն հայրենիքի կարոտը սրտում վերադարձել է Ռուսաստան և իրեն նվիրել ռուս ժողովրդի կյանքի և պատմական անցյալի պատկերմանը:

1877 թվականին նա դառնում է ռուս ռեալիստ նկարիչների՝ Պերեդվիժնիկների ընկերության անդամ և իր նկարները ցուցադրում նրանց ցուցահանդեսներում:



Ի. Ե. ՌԵՊԻՆ «Բուռլակներ»

Ռեպինն իր նկարներում պատկերում է ռուս առաջավոր գործիչներին, որոնք պայքարում էին ժողովրդի ազատագրման համար: Այդ նկարներից են՝ «Հրաժարումն խոստովանությունից», «Պրոպագանդիստի ձերբակալումը», «Չէին սպասում»:

Ռեպինին միշտ էլ հուզել է իր ժողովրդի պատմական անցյալը: Ահա «Իվան Ահեղը և իր որդին», «Զապորոժցիները»: Վերջին նկարում պատկերելով զապորոժցիներին, Ռեպինը կարողացել է արտահայտել իր խոր հավատը և համակրանքը դեպի ժողովրդի ուժը և ազատագրական ձգտումները:

...Սուլթանը «ահեղ» գրություն է ուղարկել զապորոժցիներին, որ նրանք ինքնակամ ենթարկվեն նրան: Եվ ահա զապորոժցիները գրում են պատասխան նամակը: Ամեն մեկը իր պարտքն է համարում որևէ սրամիտ խոսք ավելացնել Սուլթանի հասցեին: Նրանք չեն վախենում թշնամուց և պատրաստ են դիմադրելու նրան:

Ռեպինը մեծ դիմանկարիչ է: Նրա լավագույն դիմանկարներից են Լև Տոլստոյի, Վ. Վ. Ստասովի, նկարիչ Ի. Ն. Կրամսկոյի, կոմպոզիտոր Մ. Պ. Մուսորգսկու և այլ դիմանկարները:

Ռեպինը մեռավ 1930 թվականին 86 տարեկան հասակում:

Մեծ է Ռեպինի դերը համաշխարհային կերպարվեստի պատմության մեջ:

*Մ. ՂԱԶԱՐՅԱՆ*



# ՎԱՐԺ ՄԱՏՆԵՐՈՎ

Մարո Մելքումյանը նոր է ոտք դրել իր երջանիկ կյանքի հինգերորդ տարին և մանկապարտեզ է գնում: Երևանի № 45 մանկապարտեզի բոլոր երեխաներն էլ Մարոյի նման գիտեն երգել, պարել, արտասանել, նկարել. բայց Մարոն նրանցից մի բան ավելի գիտե: Տվեք նրան թուղթ ու մկրատ և դուք կտեսնեք, թե նա փոքրիկ մատիկներով մկրատն արագորեն աջ ու ձախ շարժելով, ինչպիսի ձևեր ու զարդանկարներ է դուրս բերում թղթից: Նա այդ բոլորն իր ընկերներից գաղտնի չի անում, որ հետո ցույց տա ու զարմացնի նրանց. ընդհակառակը, թե՛ իրենց բակում, թե՛ մանկապարտեզում Մարոն աշխատում է ընկերների աչքի առաջ: Նա օգնում է, որ նրանք էլ սովորեն ու կարողանան թղթից գեղեցիկ զարդեր կտրատել: Այդպիսի զարդերով նրանք կարող են զարդարել իրենց անկյունները:

Այս տարի հունիս ամսին ուսուցչի տանը բացվեց հետաքրքիր մի ցուցահանդես: Այնտեղ դրված էին շատ մանկապարտեզների երեխաների ձեռքի աշխատանքները՝ նկարներ, ձեռագործներ: Ցուցահանդեսում աչքի էր ընկնում Մարո Մելքումյանի ալբոմը: Այդ ալբոմը հիմա էլ կա: Նրա էջերում, սև թերթերի ֆոնի վրա, խնամքով դասավորված են Մարոյի աշխատանքները:

Մարոն փոքրիկ է, բայց թղթից նախշեր ու զարդանկարներ կտրատելու մեծ շնորհք ունի: Նրան սիրում են իր ընկերներն ու դաստիարակները: Նայեցեք նրա կատարած աշխատանքներին և ինքներդ էլ սովորեցեք թղթից նուրբ ու գեղեցիկ ձևեր կտրատել:

## ԱՆՃԻՏՆ ՈՒ ՓԻՍՈՆ

*Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Ա՛յ փիսիկ ջան, հանգիստ մնա,
Արդեն ունեմ ես մեքենա,
Չե՞ս տեսնում, որ գործ եմ անում,
Հո պարապ չեմ, խաղ ես անում։

Էլ փոքր չեմ, ա՛յ աներես,
Կար եմ անում մայրիկիս պես.
Տե՛ս, ձևել եմ տիկնիկին շոր.
Հո չե՞մ թողնի նրան տկլոր։

Մաքոքն արդեն լցրել եմ ես,
Ասեղն, ահա, թելում այսպես.
Իջեցրի արդեն ոտքը,
Այ կարում եմ՝ տրկը, տրկը։

Թե կարը շուտ վերջացնեմ,
Ու տիկնիկիս լավ հագցնեմ,
Տես՝ այն թելը. երեկվա պես
Ես կհաշեմ, դու խաղ կանես։




Հայրս մի ծովագնաց ծանոթ ուներ։ Նա ճերմակ մորուքով, պատկառելի դեմքով ծերունի էր. մենք նրան ծովի պապիկ էինք կոչում։

Մեծ տոն էր լինում մեզ համար, երբ ծովի պապիկը մեր տուն էր գալիս։ Հարևանների երեխաներն էլ էին համախմբվում նրա շուրջը և բոլորս խնդրում էինք, որ նա սկսեր իր հետաքրքիր պատմությունները ծովի ու ծովագնացների արկածներով լի կյանքի մասին։

Եվ ահա, թե ինչ պատմեց նա մի օր։

— Ես տակավին պատանի էի, երբ առաջին անգամ ծով դուրս եկա երկար ճանապարհորդություն կատարելու։ Ես շատ հետաքրքրասեր էի։ Ամբողջ օրը տախտակամածից չէի ուզում հեռանալ։ Զննող հայացքով դիտում էի շուրջս և աշխատում ոչինչ բաց չթողնել իմ տեսադաշտից։ Այդ ճանապարհորդության ընթացքում ես շատ ու շատ նորություններ տեսա, որոնցից մեկի մասին հիմա ձեզ կպատմեմ։

Խաղաղ օվկիանոսի հարավային մասերում ես տեսա մի հսկա օձ, որը գալարվում էր ալիքների հետ, ասես սպառնում էր նավին փաթաթվել։ Մի պահ զարմանքից քարացած նայեցի նրան, ապա սկսեցի կանչել իմ ծովային ընկերներին և թռթռվել.

— Նայեցեք, վիշապ-օ՞ձ... Ի՞նչ երկար է...

Նրանք ինձանից քիչ զարմացան։

Մենք սկսեցինք առասպելներ հորինել այդ օձի ուժի ու կարողության մասին. օրեկան քանի՞ տոննա ձուկ կարող է կլանել, քանի՞ նավակ կարող է խորտակել։ Նա կարող է նույնիսկ մեր հսկայական նավին փաթաթվել և նավարկությունը խանգարել։ Այդ հրեշի հայտնվելու մասին պետք էր տեղեկացնել նավապետին։

Մեզ ունկնդրում էին մի քանի փորձված ծովայիններ։ Նրանք ժպտում էին։ Նրանց մեջ էր նաև մեր նավի բնագետը, որը լուռ նայում էր ջրի ալիքներին, և մեզ թվում էր, թե խոսակցությունը նրան չի հասնում, կամ, ավելի շուտ, նա չի ուզում մեզ լսել։ Բայց, երբ որոշեցինք նավապետին հայտնել, նա ծիծաղելով մոտեցավ մեզ և ասաց.

— Դուք սխալվում եք, երիտասարդնե՛ր։ Ձեր տեսածը ոչ օձ է, ոչ էլ մի այլ կենդանի։

— Հապա ի՞նչ է,— զարմացանք մենք։

— Դա ջրիմուռ է,— հանդարտ պատասխանեց բնագետը։

— Ջրիմո՞ւռ։ Բայց չէ՞ որ ջրիմուռները բուսական աշխարհի ամենացածր դասի ներկայացուցիչներ են, իսկ սա հսկա է,— հարցրեց մի երիտասարդ։

— Սա մակրոցիստիս պիրիֆերա կոչվող ջրիմուռն է։ Այդ երկար օձաձև գոտին, որ ձեզ մոլորեցրել է, նրա ցողունն է, որը չորս-հինգ հարյուր մետր, նույնիսկ ավելի երկարություն ունի։ Նրա ժապավենաձև տերևները կախված են ջրի մեջ, մակերեսին թողնելով միայն ցողունի լերկ կողմը, որը ձեզ օձ է թվացել։

Մենք անհարմար զգացինք, որ բույսը շփոթել ենք կենդանու հետ։

— Շատ ծովայիններ են այդպես շփոթել,— հանդրստացրեց մեզ բնագետը,— շատերն են երդվել, որ իրենց աչքով տեսել են մի կիլոմետրանոց օձ։ Այս ջրիմուռը բուսական աշխարհի հսկաների շարքն է դասվում՝ սեքվոյայի, ռոտանգ արմավենու ու երկնահուպ էվկալիպտի հետ։

Յ. ԱՂԱՍԱՐՅԱՆ

# «ՈՍԿԻ ՔԱՂԱՔ»

Ձեզանից ո՞վ չի կարդացել Հովհաննես Թումանյանի «Ոսկի քաղաքը»:

Դուք այդ հեքիաթից գիտեք, որ Ոսկի քաղաք չի նշանակում ոսկուց շինած քաղաք: Բոլորովին հակառակը: Այդ քաղաքում ոսկու կտոր էլ չկա, քաղաքի բնակիչները չգիտեն էլ թե ինչ բան է ոսկին: Հենց դրանով էլ նրանք ազատ են ու երջանիկ: Նրանց երջանկության աղբյուրը ազնիվ աշխատանքն է:



*Մի տեսարան «Ոսկի քաղաք» ներկայացումից:*

«Ոսկի քաղաք» հեքիաթ-պիեսը Հովհ. Թումանյանի հեքիաթի հիման վրա գրել է դրամատուրգ Գ. Յաղջյանը:

Չքնաղ արքայադուստր Հայրենուհին ուզում է իր կյանքի ընկերը դարձնել միայն այն քաջ երիտասարդին, որ տեսել է Ոսկի քաղաքը և իր մորը՝ այդ քաղաքի թագուհի Հեղինեին: Եվ աղքատ մի երիտասարդ՝ Քաջիկը հոր՝ Մերունի հետ ճամփա է ընկնում դեպի այդ հեռավոր ու անհայտ քաղաքը: Ի՞նչ փորձանք ասես, որ չեն բերում Քաջիկի գլխին: Բայց նրան ոչ մի չար ուժ չի կարողանում շեղել նպատակից, որովհետև նա ուզում է երջանկություն բերել իր ժողովրդին:

Քաջիկն ու նրա հայրը հասնում են Ոսկի քաղաքը: Մայր Հեղինեն նրանց բացատրում է, որ իր քաղաքի բնակիչները բախտավոր են ոչ թե ոսկով, այլ ազնիվ աշխատանքով: Եվ իմանալով, թե Քաջիկն ում մոտից և ինչ նպատակով է եկել, շատ է ուրախանում: Նա Քաջիկին տալիս է երջանկաբեր կարմիր ծաղիկը, բացատրում կյանքի գաղտնիքը:

Քաջիկն ու Մերուն հայրիկը արծվի թևերին բազմած, հասնում են իրենց քաղաքը: Հրաշագործ ծաղիկը ցրում է իրենց աշխարհի վրա իջած թանձր խավարը: Ոսկու դաժան թագավորի կախարդանքը վերանում է:

Եվ այսպես Քաջիկը ժողովրդին ազատում է խավարից ու երջանկություն բերում իր Հայրենիքին:

Ներկայացման ռեժիսորն է Հ. Ղափլանյանը, նկարիչներն են Ժ. Վարդանյանը և Ա. Չիֆլիկյանը, կոմպոզիտորը՝ Է. Հովհաննիսյանը: Հեքիաթ-պիեսի հերոսների դերերը կատարում են թատրոնի շնորհալի դերասանները: Քաջիկի դերը խաղում է Է. Էլբակյանը, Մերունի դերը՝ Ա. Ղազարյանը:

Ա. Միկոյանի անվան պատանի հանդիսատեսի թատրոնի ստեղծագործական կոլեկտիվը մանուկների համար ստեղծել է հետաքրքիր մի ներկայացում, որը սովորեցնում է սիրել Հայրենիքը, ազնիվ աշխատանքը, լինել քաջ ու համարձակ:

*Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*

# ԱՄԵՆ ԻՆՉԻ ՄԱՍԻՆ

## Էլեկտրական ուռկան

*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ*

Գիտնականները շատ են մտածել ձկնորսական աշխատանքը մեքենայացնելու մասին: Բայց արդյունքի չեն հասել:

Սովետական գիտնական Մ. Ֆ. Չերնիգինը 1936 թվականին աշխարհում առաջին անգամ այդպիսի մի փորձ կատարեց Աստրախանում: Նա գտավ, որ ձուկն անհրաժեշտ է դատարկել և տեղափոխել ջրի հետ միասին: Ապակյա խողովակներից պատրաստած մոդելի օգնությամբ նա տեղափոխում էր շատ փոքրիկ ձկնիկներ. բայց մղիչը պոկում էր ձկների գլուխները, պատառոտում նրանց փորը: Չերնիգինը յոթ անգամ փոխեց իր մոդելի նախագիծը, մինչև որ հաջողվեց ստանալ անվթար աշխատող մեքենա: Ջրաշիթային մղիչի առաջին օրինակը տեղադրվեց Կամչատկայում, Ս. Մ. Կիրովի անվան նավահանգստում:

Երբ ձեռքով ձուկը նավակից մեկ ու կես ժամում էին դատարկում, ջրաշիթային մղիչով դատարկվեց երեք և կես րոպեում: Նավակներն այլևս ափ չէին հանում, այլ ծովի հատակում տեղադրված խողովակների միջով ձուկը մղում էին ուղղակի գործարան: Մղիչը բազմաթիվ առավելություններ ուներ. ոչ մի ձուկ չէր կորչում, ձկները գործարան մտնելուց առաջ հիանալի լվացվում էին: Դրանից հետո Չերնիգինը և Բորիսովը սկսեցին որսի ավելի արդյունավետ եղանակներ որոնել:

Ձկներին գրավելու և կենտրոնացնելու համար պրոֆեսոր Պ. Գ. Բորիսովը ընտրեց էլեկտրական լույսը: էլեկտրական ուժեղ լույսի աղբյուրը իջեցվում է ջրի տակ: Ձկները արագ կերպով հավաքվում են նրա շուրջը: Ապա գործի էր դրվում Մ. Ֆ. Չերնիգինի ջրաշիթային մղիչը: Դա նախօրոք իջեցվում էր ջրի մեջ և ձկներին մղում դեպի խողովակը: Բայց ծովում կամ գետում ազատ լողացող ձուկը զգալով մղիչի առաջացրած ջրի ուժեղ հոսանքը, դիմադրում էր, սկսում լողալ հակառակ ուղղությամբ և խուսափում էր մտնել խողովակի բացվածքի մեջ:

Մ. Ֆ. Չերնիգինը փորձեց առանց էլեկտրական լույսի, ջրի մեջ առաջացնել էլեկտրականացված դաշտ և գործի դնել էլեկտրական ուռկանը: Երբ գործարկվեց ջրաշիթային մղիչը, ոչ մի ձուկ չէր մտնում խողովակին. ուժեղ հոսանքի տակ, նրանք խուսափում էին խողովակի բացվածքից: Բայց ահա միացվեց բարձր լարվածության հաստատուն հոսանքը: Դիտման աշտարակից երևացող պատկերը բոլորովին ուրիշ էր: Բոլոր ձկները սկսեցին լողալ դեպի խողովակի բացվածքը, կարծես մի ինչ-որ անտեսանելի ուժ բռնի կերպով նրանց քաշում էր ներս:

Երկու հազով 11 ժամ էլեկտրական ուռկանը աշխատեցնելուց հետո, պարզեցին, որ նա որսացել է 25 ցենտներ ձուկ: Ներկայումս էլեկտրական ավելի կատարելագործված ուռկաններ գործադրվում են Սովետական Միության ձկնարդյունաբերական շատ վայրերում:

## Պտղակեր չղջիկներ

Երկու կիսագնդերի արևադարձային երկրներում ապրում են չղջիկների բազմաթիվ տեսակներ: Նրանք սնվում են ծառերի պտուղներով և մեծ վնաս են պատճառում այգիներին: Առանձնապես վտանգավոր են այն չղջիկները, որոնք տարածված են Զոնդյան կղզիներում, Հնդկաստանում, Ավստրալիայում, Նոր Գվինեայում, Ցեյլոնում և Մադագասկարում: Նրանք կոչվում են թռչող շներ և թռչող աղվեսներ: Չղջիկները մեծ մասամբ իրենց օրն անց են կացնում անտառներում կամ պտղատու այգիներում: Հաճախ մի ծառի վրա հավաքվում են հարյուրից ավելի չղջիկներ: Երբ իջնում է իրիկնային մշուշը, նրանք հարձակվում են ծառերի վրա և ոչնչացնում հասած պտուղները: Գյուղացիները անկոչ հյուրերին խփում են մագառներից պատրաստված փշե մտրակներով, պաշտպանելով պտուղները վնասատուներից: Այգիները չղջիկներից պաշտպանելու համար Հարավային Ամերիկայում ծառերը ծածկում են հատուկ ցանցերով, սակայն խորամանկ չղջիկները մտնում են ցանցի տակ և բարձրանալով ծառերի վրա, ոչնչացնում են բերքը:

# ՄԵՐ ՃԱՄԲԱՐՈՒՄ

Խոսք՝ Վ. ՏԱԼՅԱՆԻ

Երաժշտություն՝ Ա. ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

ՀԱՆԳԻՍՏ

Մեր ճամ-բա-րում ծաղ-կա-զարդ՝ դրո-շակ-ներ կան վառ զը-վարթ, փող-փո-ղում են օրն ի բուն ծի-ծա-ղի հետ մեր զըն-գուն փող-փո-ղում են օրն ի բուն ծի-ծա-ղի հետ մեր զըն-գուն:

ԱՇԽՈՒՅԺ

Մեր ճամ-բար, մեր ճամ-բար գե-ղե-ցիկ ես մեզ հա-մար ամ-ռա-նում ենք քո ծո-ցում որ ա-ռող-ջ ու ա-ռույգ լավ սո-վո-րենք դըպ-րո-ցում, դըպ-րո-ցում:

Թավ անտառներ ենք անցնում,
Զով ջրերում լողանում,
Ու խարույկի շուրջ բոլոր
Երգերասում նորանոր:
ԿՐԿՆԵՐԳ.— Մեր ճամբար և այլն...

Մենք՝ գրքի հետ բարեկամ.
Նրանից ենք շատ անգամ
Բյուր գաղտնիքներ իմանում,
Դեպի հեռուն սլանում:
ԿՐԿՆԵՐԳ.— Մեր ճամբար և այլն...

Մեր ճամբարում ծաղկազարդ,
Դրոշակներ կան վառ, զվարթ.
Փողփողում են օրնիբուն
Ծիծաղի հետ մեր զնգուն:
ԿՐԿՆԵՐԳ.— Մեր ճամբար և այլն...

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ԽՆԴԻՐ

Քաղաքային ճամբարի երեխաները գնել էին 20 ծաղկաման ծաղիկներով: Այդ ծաղկամանները նրանք դասավորել էին այնպես, որ ճամբարի խորհրդի շենքի երեք լուսամուտից և դռնից նայելիս ամեն կողմում երևում էր վեց ծաղկաման: Աշոտիկի հայրն առաջարկեց ճամբարի համար գնել ևս չորս ծաղկաման: Ինչպե՞ս դասավորել այդ 24 ծաղկամանները, որ ամեն մի լուսամուտից, ինչպես նաև դռնից նայելիս, երևան լինի վեցական ծաղկաման:



Օգնեցեք ճամբարականներին լուծելու այս խնդիրը:

*Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*

## ԿԱՐՈ՞Ղ ԵՍ

Կոլտնտեսականը շուկայում վաճառում էր երկու տեսակի խնձոր: Մեկ ռուբլի արժեր առաջին տեսակի երկու խնձորը, երկրորդ տեսակի՝ երեք խնձորը: Երբ յուրաքանչյուր տեսակից մնացել էր արդեն 30 խնձոր, կոլտնտեսականը հաշվեց և իմացավ, որ վաճառելուց հետո պետք է ստանա 25 ռուբլի: ($30:2=15\cdot1=15$ ռուբլի, $30:3=10\cdot1=10$ ռուբլի, $10+15=25$ ռուբլի):

Հաշվելուց հետո կոլտնտեսականը խառնեց երկու տեսակի խնձորները և հինգ հատը երկու ռուբլով առաջարկեց գնորդներին: Կոլտնտեսականը այսպես էր մտածում.

«...Առաջին տեսակի երկու խնձորը արժե 1 ռուբլի, այդքան արժե նաև երկրորդ տեսակի 3 խնձորը. հետևապես առաջինի 2 և երկրորդի 3 խնձորները միասին կարժենա 2 ռուբլի: Ուրեմն դրանից ընդհանուր գումարը չի փոխվի: Բայց, երբ բոլոր խնձորները վաճառվեց, ստացավ ոչ թե 25, ինչպես ինքն էր հաշվել, այլ 24 ռուբլի: ($60:5=12$ ռ. $12\cdot2=24$ ռուբլի):

Մտածեցեք և գտեք թե ի՞նչ եղավ 1 ռուբլին:

## ՄՏԱԾԻՐ ԵՎ ԳՏԻՐ

1. Երկու հայր և երկու որդի գնեցին երեք խնձոր և հավասար կերպով բաժանեցին իրար մեջ:

Որքա՞ն խնձոր հասավ նրանցից ամեն մեկին:

2. Ճանապարհով զառնուկներ էին գնում: Մեկը գնում էր առջևից, իսկ երկուսը՝ հետևից: Երկուսը գնում էին առջևից, իսկ մեկը՝ հետևից, մեկը երկուսի մեջտեղից, իսկ երեքը՝ մի շարքով: Ապա գտեք, քանի՞ գառնուկ էին գնում ճանապարհով:

## Պատասխանում ենք

Մեր ամսագրի 1954 թվականի 5-րդ և 6-րդ համարներում տպագրված «Հետաքրքիր ժամանցի» պատասխաններն են:

«ՊԻՈՆԵՐ» № 5.

1. ՉԱՅՆՎՈՐԴ «ՇԱԽՄԱՏ».—1. Չիգորին, 2. Նավակ, 3. Կերես, 4. Սպորտ. 5. Տեղափոխում, 6. Մատ, 7. Զատուրանգա, 8. Ակումբ, 9. Բլից, 10. Ցայտնոտ, 11. Տոլուշ, 12. Շախմատ:

2. ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽՆԴԻՐ.—1. Կամա, 2. Ամուր, 3. Մուշա, 4. Արագ:

3. ՈՐՍՈՐԴՆ ՈՒ ԱՐՋԸ.—Որսորդը հյուսիսի բնակիչ էր և նրա սպանածը սպիտակ արջ էր:

«ՊԻՈՆԵՐ» №6.

1. ԿՐՈՍՎՈՐԴ.

Ուղղահայաց—1. Կոզլով, 2. Բիլինա, 4. Կավերին, 5. Միչուրին, 8. Օրանժ, 10. Լեմեշև, 11. Բաքելոն, 12. Կանտատա, 13. Բորոդին, 15. Շչորս, 16. Լուարա, 20. Սիմոնով, 21. Նեման, 22. Ալյասկա, 27. Անահիտ, 28. Ավրորա:

Հորիզոնական—3. Փոքորիկ, 6. Կապելլա, 7. Սիցի-

լիա, 9. Դվորժակ, 14. Սևիլիա, 15. Շինել, 17. Ամիրով, 18. Սերով, 19. Տարտու, 23. Մեխիկո, 24. Սմենա, 25. Տալլին, 26. Ճախարակ, 29. Կոմիտաս, 30. Բրոդսկի, 31 Միսսուրի:

2. ՁԱՅՆՎՈՐԻ—«ԾԱՂԻԿՆԵՐ»—1. Ձնծաղիկ, 2. Կոկոն, 3. Նար-Դոս, 4. Սերմնարան, 5. Նարգիզ, 6. Զանգակ, 7. Կոլեկցիա, 8. Անթառամ, 9. Մանուշակ, 10. Կակաչ:

**Ճիշտ պատասխանել են**

Ա. Գևորգյանը (Ազիզբեկովի շրջան), Ռ. Ջախոյանը (Ախուրյանի շրջան), Ջ. Գալստյանը (Իջևանի շրջան), Ա. Հովսեփյանը, Է. Աղավելյանը (Երևան), Ա. Բզնունին (Կիրովական), Լաուրա և Լենարա Նահատակյանները, Լևիկ Կարախանյանը (Վրացական ՍՍՌ), Ս. Մոսինյանը (Ալավերդու շրջան), Է. Մարտիրոսյանը (Լենինական) և շատ ուրիշներ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝ նկ. Ռ. ՍԱՐԳՍՅԱՆԻ*






*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 11908: Պատվեր 909: Տիրաժ 5000: Տպագրական 2¼ մամուլ: Ստորագրված է տպագրության 2.VIII. 1954 թ.:*

*Գլխհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող., № 65, 1954 թ.:*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## Անձնվեր կոմունիստը

— Եղեք պրոլետարական երիտասարդության օգնականներն ու ղեկավարները՝ նրա բոլոր մարտերում: Ձնայելով տեռորին ու հալածանքներին, առա՛ջ դեպի պայքար ու հաղթանակ:

Այսպես էր կոչ անում գերմանական ժողովրդի հարազատ զավակ, անձնվեր կոմունիստ Էռնստ Թելմանը Լայպցիգի հրապարակում հավաքված 30 հազար բանվորներին ու բանվորուհիներին:



Ոգևորված առաջնորդի կոչով նրանք գնացին պայքարով ու աշխատանքով կատարելու այն:

Դեռ վաղ հասակից պատանի Էռնստը ձգտում էր այնտեղ, որտեղ կյանքը լի էր վտանգներով և նրանից պահանջվում էր համարձակություն: Կարիքը նրան ստիպում էր ամեն տեսակի աշխատանք տանել: Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ, խրամատներում նա իր ընկերներին՝ շարքային զինվորներին բացատրում էր, թե ինչ է պրոլետարական ինտերնացիոնալիզմը:

Անցան տարիներ: Է. Թելմանը դարձավ գերմանական բանվորների սիրելի առաջնորդը: Նա բանվորներին տանում էր դեպի պայքար հարստահարողների դեմ, ինչպես այդ արեցին բոլշևիկները: Թելմանը տաս տարի ղեկավարեց Գերմանական Կոմունիստական պարտիան:

1932 թվականին Գերմանիայում դասակարգային պայքարն ավելի սրվեց: Հակաֆաշիստական միասնական ճակատի դրոշի տակ համախմբվեցին գերմանական միլիոնավոր աշխատավորներ: Ֆաշիստական ժանտախտը մոլեգնում էր ամբողջ երկրում: Հայրենիքի դավաճանները իշխանությունը հանձնեցին Հիտլերին, որը հալածում էր ու բանտ նետում կոմունիստներին: Թելմանին ձերբակալեցին: Եվ ամբողջ աշխարհի ազնիվ ու առաջավոր մարդիկ իրենց բողոքի ձայնը բարձրացրին ազատության և անկախության մարտիկի պաշտպանության համար: Սակայն գերմանական ֆաշիստները 1944 թվականի օգոստոսի 10-ին գազանաբար սպանեցին Թելմանին:

Այսօր գերմանական ժողովուրդը խորին սիրով է հիշում իր սիրելի զավակին՝ Էռնստ Թելմանին:

## Առաջին շոգեքարշը Ռուսաստանում

Եֆիմ Ալեքսեևիչ ու Միրոն Եֆիմովիչ Չերեպանովներն ապրում էին Ուրալում: Այստեղ անցավ ու վերջացավ նրանց կյանքի դժվարին ուղին: Հայր ու որդի ճորտ էին: Միայն 1833 թվականին ճորտությունից ազատվեց Եֆիմը, իսկ մի քանի տարի հետո՝ Միրոնը: Չնայած ծանր պայմաններին, այդ հասարակ ռուս մարդիկ շարունակում էին ստեղծագործել: Այդ տարիներին է, որ նրանց հաջողվում է ընկնել Պետերբուրգ և գնալ Շվեյցարիա: Այստեղ նրանք ծանոթանում են ժամանակի առաջավոր տեխնիկային: Հայրենիք վերադառնալով՝ Չերեպանովները Նիժնի-Տագիլից մի քանի կիլոմետր հեռու կառուցում են մեխանիկական գործարան:

1824 թվականին Եֆիմ Ալեքսեևիչը պատրաստեց շոգու միջոցով աշխատող առաջին մեքենան: Չերեպանովների շոգեմեքենան մեկ ժամում կտրում էր 15 կիլոմետր, քաշելով 3,5 տոննա բեռ: 1835 թվականին նրանց պատրաստած շոգեմեքենան արդեն քաշում էր 17 տոննա:

Իր ժամանակին ռուս հայրենասերների գյուտն ուշադրության չարժանացավ: Սակայն ռուս գիտությունն ու տեխնիկան երախտապարտ են ռուսական առաջին շոգեմեքենայի պիոներներին:

## Մեծ Ֆիզիոլոգը

Տյուպլի Ստանը պատմության մեջ հայտնի է որպես շատ ռուս ականավոր գիտնականների ծննդավայր: Այդ գյուղի մի երկհարկանի փայտաշեն տնակում 1829 թվականին ծնվեց Իվան Միխայլովիչ Սեչենովը: Փոքրիկ Իվանը 10 տարեկան էր, երբ հայրը մեռավ: Մեծ եղբոր խորհրդով, մայրը որոշեց որդուն ուղարկել ռազմական ուսումնարան: Բայց Միխայլովսկու ամրոցում տեղավորված ուսումնարանի դաժան ռեժիմը ժիր ու հարցասեր պատանուն կաշկանդում էր: Ուսումնարանն ավարտելուց հետո Սեչենովը մեկնում է Մոսկվա: Այս նոր շրջապատը մեծ ազդեցություն է թողնում պատանու վրա:

Դեռ երեսուն տարեկան չդարձած Սեչենովը մեծ հայտնագործումներ արեց: Նա ցույց տվեց, թե ալկոհոլը ինչպիսի մեծ վնաս է հասցնում օրգանիզմին: Վտանգելով իր առողջությունը հայրենական գիտության համար, ազնիվ գիտնականը փորձերից շատերը կատարեց իր վրա: Վաթսունական թվականներին երիտասարդ



Սեչենովի անունն արդեն թնդում էր ամբողջ Ռուսաստանում: 1863 թվականին լույս տեսավ Սեչենովի «Գանգուղեղի ռեֆլեքսները» գիրքը: Ցարական կառավարությունը հալածում ու հետապնդում էր ռուս մեծ ֆիզիոլոգին: Սակայն ոչ զրկանքը, ոչ դժվարությունը չկարողացան ընկճել նրան: Նույնիսկ ամենադժվար ժամանակ Սեչենովը մերժեց Եվրոպայի լավագույն լաբորատորիաներում աշխատելու առաջարկը: Նա գտնում էր, որ ռուս գիտնականը պետք է իր գիտական աշխատանքները կատարի ոչ թե օտարության մեջ, այլ իր հայրենիքում:

Անցան տարիներ: Եվ մեծ գիտնականի ցանկությունն իրականացավ: Այժմ բոլոր հնարավորությունները ստեղծված են, որպեսզի մեր գիտնականներն ապրեն ու ստեղծագործեն իրենց հարազատ հայրենիքում:

ԳԻՆԸ 2 Ռ.



ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ԳԵՏԻ ԱՓԻՆ

Ֆոտոէտյուդ Ս. ԽՈՍՐՈԵՎԻ